1916 № 6.—Յունուարի 31 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ.

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 *ռուբլի*, կէս տարուան 2 *ր.* 50 *կ.։* *Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝* տարեկան 3 *ր.*, կէս տարուան 2 *ր.։ Արտասահման՝* տարեկան 5 *ր.* կէս տարուան 3 *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտատարադեան հրապար.* № 7.
**Հեռախօս № 29.**

*Փոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*
*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*
*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*
*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*
*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

*Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը ցաւօք սրտի յայտարարում է ի գիտութիւն բարեկամների, ծանօթների և Ընկերութեան անդամների, որ կիւրակի, 31-ին յունուարի, պատարագից յետոյ Վերայի եկեղեցում, կը կատարուի Վերայի գերեզմանատանը թաղումն այս ամսի 28-ին վախճանուած* բարերար

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԳՐԻԳՈՐԵԱՆ ՄԻՐԻՄԱՆԵԱՆԻ



ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ԲԱՑՈՒՄՆ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 1914 Թ.

Կ. Հ. Բ. ԸՆԿ. ՀԱՅՈՑ ԼԱԶԱՐԵԹԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՄԵԾ ՀԱՏՈՒԱԾՆԵՐԸ

—

*Հայութիւնը երկու մեծ հատուածներից է բաղկացած—արևելեան և արևմտեան։ Այս բաժանումը լոկ քաղաքական հանգամանք չէ ներկայացնում, այլ ունի իր մէջ, թւում է, և կուլտուրական կերպարանք։ Հէնց այն հանգամանքը որ երկու հատուածներն ունէին իրանց տարբեր և բնորոշ լեզուները՝ ցոյց է տալիս, որ արևելեան և արևմտեան յորջորջումը արհեստականօրէն գոյացած բաժանման հետևանք չէ, այլ ունի իր մէջ աւելի խոր պատճառներ։*

*Այդ երևոյթի ուսումնասիրութիւնը չէ մեզ այսօր հետաքրքրում։ Կայ այդ բաժանումը, և նա ահագին բացասական դեր է կատարել հայ ազգի ճակատագրի մէջ։ Հայաստանի աշխարհագրական պայմանները, պատմական շատ պատճառներ միայն զարգացրել են երկու հատուածների անջատումը։ Նա առաջ է բերել ոչ միայն օտարացում, այլ և մի տեսակ նախապաշարմունք հատուածների մէջ՝ իրար վերաբերմամբ։*

*Բուժել անցեալի այդ վէրքը անհրաժեշտ է, բայց հեշտ չէ։ Շուտով հարիւր տարի կը դառնայ, ինչ արևմտեան հայութիւնից մի քանի տասնեակ հազար հոգի, իբրև գաղթականներ, ապրում են արևելեան հայերի հետ, բայց չէ կարելի ասել թէ այսօր իսկ այդ տարրերը իրար հետ ձուլուել են վերջապէս և ներկայացնում են ազգային միատեսակ մի խառնուածք, մի միաձոյլ կուլտուրական տիպ։ Սակայն մեր նորագոյն պատմութիւնը ցոյց է տուել և ցոյց է տալիս այսօր իսկ, որ նա չըպիտի հաշտուի հին իրականութեան հետ, որ նրա մեծագոյն խորհուրդը պիտի լինի սերտ մերձեցումը երկու հատուածների, միաձուլումը։ Առանց այս մեծ աշխատանքի չըկայ և չէ կարող լինել ազգային գաղափար։ Եւ այս գաղափարը պիտի զարգանայ և իրականանայ անկախ քաղաքական հարցից անգամ, եթէ կանգնելու լինենք լոկ ազգային կուլտուրայի, քաղաքակրթական առաքելութեան հողի վրայ։*

*Մինչև 1877—1878 թ. պատերազմը թոյլ էին կապերը ռուսահայերի և թիւրքահայերի մէջ։ Հայոց հարցը դարձաւ այն հսկայական դրդիչը, որ սկսեց արագ մօտեցնել իրար երկու մեծ հատուածները։*

*Մի ընդհանուր դաւանանք, մի ընդհանուր սրբութիւն և նահատակութիւններ ու զոհեր այդ սրբութեան համար—այս օղակներից կազմուեցին միութեան կապերը։ Բայց այս մեծ շարժիչներն էլ բաւական չէին ցանկացած միաձուլումը առաջացնելու համար։ Գաղափարական գործիչները, մտաւորականութիւնը կարող էին աւելի սերտ եղբայրակցութիւն մշակել, բայց ժողովրդական զանգուածները դարձեալ կը շարունակէին իրարից հեռու մնալ, իրար խորթ ու անհասկանալի լինել։*

*Որքան և ցաւալի լինի ասելը, թիւրքահայերի դժբախտութիւններն էին, որ եկան այս պակասութիւնը հետզհետէ վերացնելու, այսինքն երկու կողմերի ժողովրդական զանգուածները իրար հետ մերձաւոր շփման մէջ դնելու համար։ Կոտորածները. սով, հալածանքները քշում բերում էին թիւրքահայ ժողովուրդը, ժամանակաւորապէս բնակեցնում էին մեր երկրում։ Վերջին 20-ամեակի ընթացքում քանի քանի անգամ նրանք եկան ու էլի գնացին։*

*Չը կայ չարիք առանց բարիքի։ Կոտորւում էին մեր դժբախտ եղբայրները, բայց ապրում էին մեզ հետ մի յարկի տակ. եկուոր ու բնիկ սովորում էին իրար, իրար տալիս էին ոչ միայն իրանց հացն ու թացը, այլ և ինչ ունեն իրանց հոգու ու մտքի մէջ։*

*Այս դաժան, անողորմ միջոցով էր հայոց նորագոյն պատմութիւնը իրագործում իր մեծ խորհուրդը։*

*Եւ ահա այսօր—դարձեալ մի անգամ ևս—անողորմ բախտը թիւրքահայերին բերել է մեր գիւղերն ու քաղաքները։ Այսօր նրանք աւելի շատ են քան եղել են երբ և իցէ, ուրեմն և աւելի մեծ չափերով է կատարւում նրանց շփումը մեզ հետ։ Ազգային երկու մեծ հատուածները ընդգրկուած են իրար հետ սեղմօրէն։*

*Ազգային ինքնապաշտպանութեան մեծ գաղափարը պահանջում է, որ գիտակցութիւն մտցուի այս փոխադարձ շփումների մէջ։ Երկու հատուածները պիտի եղբայրաբար փոխանակեն իրանց ունեցած բոլոր բարիքները, իրանց կուլտուրական և մտաւոր գանձերը։ Այս հողի վրայ է որ պիտի անհետանայ անցեալի տխուր ժառանգութիւնը, որից յետոյ միայն հայը Արաքսի ափերից մինչև Տաւրոս է մինչև Արևմտեան Եփրատ կը դառնայ հոգեպէս և կուլտուրապէս ձուլուած մի միութիւն։*

*Այդ փոխանակութեան մի տեսակը մենք կը դնէինք հէնց այժմ մեր ընթերցողների համար։ Տանք մեր եղբայրներին մեր դպրոցական դաստիարակութիւնը, մեր ձեռք բերած քաղաքակրթական սկզբունքները։ Հազարաւոր որբեր կան մեզ մօտ։ Դարձեալ ու դարձեալ, մեր սև բախտից, այդ փոքրիկների մէջ պիտի մենք տեսնենք*

ապագայ հայութիւնը, որ իր արիւն-քրտինքով պիտի շէնացնէ Հայկական Բարձրաւանդակը։ Ուրեմն, որքան թանկագին ու ցանկալի մարդիկ են նրանք և որքան իւրաքանչիւրը իրաւունք ունի պահանջելու մեզանից սէր, ուշադրութիւն, խնամք։ Եւ երբ այսօրուայ փոքրիկը կը դառնայ ջղուտ աշխատաւոր իր հայրենի հողի վրայ, այստեղ նա կը զարգացնէ այնպիսի սովորութիւններ, այնպիսի կուլտուրա, որոնք հարազատ կը լինեն և մեզ համար, իբրև արդիւնք մեր տուած դաստիարակութեան։

Իրանց կողմից թիւրքահայերը բերել են մեզ մօտ իրանց գանձերը—արուեստներ, ազգային հարուստ աւանդութիւններ, բանաւոր գրականութիւն, աշխատանքի ձեւեր։ Դրանց էլ մենք ենք կարօտ։ Թող նրանք էլ մեզ տան ինչ կարող են։ Մեր ազգային-կուլտուրական բոլոր հարստութիւնները մէջ բերենք և այսպիսով կազմակերպենք մեծ գործը, որ անդադար և տոկողաբար պահանջում է մեզնից մեր նորագոյն պատմութիւնը—միացում աւելի երջանիկ օրերի համար...

---

## ՆՈՒԷՐՆԵՐ

### «Համբաւաբերի» տարածման համար

*Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացել է տիկին Եղիսաբեթ Ս. Միրզոյեանից 100 ռ.։*

---

# Ներքին տեսութիւն

## ԻՆՉՊԷՍ ԲԱՐՒՈՔԵԼ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ԴՐՈՒԹԻՒՆԸ

Մեր ներկայ իրականութեան կնճռոտ և սուր հարցերի շարքում փախստականների խնդիրը բռնում է նշանաւոր տեղ։

Սկզբում, երբ դեռ ևս պարզուած չէր այդ խնդրի լրջութիւնը, նրա մեծութիւնը և դժուար լուծումն, նա ընդունուեց իբր բարեգործական միջոցներով լուծելի մի խնդիր։ Յետոյ կառավարութիւնը իր վրայ վերցրեց փախստականների մասին հոգատարութիւնը, երբ պարզուեց, որ արևելքում հարիւր հազարաւոր, իսկ արևմուտքում միլիոնաւոր փախստականների ծով կարիքները և նրանց դրութիւնից ծագած հարցերը վեր են հասարակական ուժերից. երբ ակնյայտնի դարձաւ, որ եթէ գործը կանոնաւոր ընթացք և բաւարարութիւն չստանայ, կարող է մեծ վտանգ սպառնալ թէ տեղական ժողովրդին և թէ հայրենիքի պաշտպան մեր քաջերի զօրքին. վերջապէս երբ ամենքը ըմբռնեցին որ փախստականների շրջաններում սովից և կենսական անպատեհ պայմաններից կարող են առաջ գալ այնպիսի զարհուրելի հիւանդութիւններ, ինչպէս են բծաւոր տիֆ, ժանտախտ, սև ծաղիկ և այլն, որոնք իրենց մեծաչափ զոհերով կարող են մոռացնել տալ պատերազմի դաշտի կորուստները։

Հարցի այդ ուղղութիւնը ստանալու վրայ մեծ ազդեցութիւն ունեցան մամուլը և Պետական Դուման։ Մամուլը ապացուցում էր, որ փախստականների հոգատարութեան գործը յանուն պետական շահերի պէտք է համարուի պետական պարտականութիւն, և կառավարութեան վրայ պէտք է ծանրանայ այդ հոգսը, իսկ Պետական Դուման իր հեղինակութեամբ հաստատեց, որ արդարացի է այդ միտքը և մեծ գումարներ տրամադրելի դարձրեց կառավարութեանը այդ նպատակի համար։

Սակայն փախստականների վիճակը, չնայած պետական գանձարանից բաց թողնուող խոշոր գումարներին, չնայած հասարակական կազմակերպութիւնների անընդհատ գործունէութեան, մնում է անմխիթարական և ծանր. փախստականները կրկին ապրում են կիսաքաղցած, կիսամերկ, ցուրտ, մութ և խոնաւ բնակարաններում։

Հետևանքը այս տեսակ ապրուստի հասկանալի է.— բծաւոր տիֆ և այլ հիւանդութիւններ չեն պակասում և շարունակում են իրենց առատ հունձը թշուառ փախստականների մէջ։ Բնականաբար հարց է ծագում. ինչո՞վ բացատրել այս ցաւալի երևոյթը։

Պատճառներ շատ կան, բայց ըստ մեր կարծիքի այստեղ կան երկու գլխաւոր պատճառ. մէկը փախստականներին տրուող նպաստի չափն է, որը միանգամայն անբաւարար է ներկայումս տիրող առասպելական թանգութեան շնորհիւ, իսկ միւս պատճառը այն սիստեմն է, որը գործադրւում է։

Նպաստի չափը որոշուած է 15 կոպէկ ամէն մէկ հոգու համար. այդ նպաստը տրւում է երբեմն կանխիկ դրամով, բայց մեծ մասամբ, տրւում է ամեն մէկ հոգու համար $1^1/_3$ ֆ. ալիւր ու մի քանի կոպէկ էլ փող այն հաշուով, որ ալիւրի արժողութիւնը ու այդ մի քանի կոպէկները հաւասար լինեն 15 կոպէկի։ Այս ձևով տրուելիք թէ դրամը և թէ ալիւրը չեն գոհացնում փախստականին շատ պարզ պատճառով. փախստականը ստացած դրամով երբեմն ալիւր չի գտնում, կամ գտնում է վատ ու թանգ ալիւր տեղական խանութներում, ուր հարստահարութիւնը գերիշխող դեր է կատարում. իսկ եթէ կառավարութիւնից է ստանում ալիւր, նրա ստացած ալիւրը չի կշտացնում և մեծ մասամբ, ինչպէս ցոյց է տուել փորձը. ալիւրը լինում է փչացած, դառը, երբեմն էլ լի որդերով։

Բացի այս անբաւարար սննդից փախստականը այլևս ոչինչ չէ ստանում. նա չէ ստանում վառելիք, չէ ստանում լոյս և այլ շատ կենսական իրեր։

Փախստականների օգնութեան ձևի փոխելը այժմ դարձել է մի աղաղակող հարց, և եթէ այս հարցը մօտ ապագայում չըստանայ իր կանոնաւոր և հեշտ լուծումը, կառավարութեան տուած միջոցները պէտք է համարել աննպատակայարմար, իսկ փախստականներին մեծ վտանգների մատնուած։ Փախստականներին այս ծանր դրութիւնից հանելու համար, նրանց սնունդը բարւոքելու համար, նրանց առողջութեան քայքայման առաջն առնելու համար, հարկաւոր է գէթ երկու միջոցի դիմել, նախ՝ բաժնեմասը (պաեկ) տալ կանխիկ դրամով և չափը հասցնել 20 կոպէկի բոլորի համար, բացի երեխաներից մինչև հինգ տարեկան հասակը, որոնց համար կարելի է սահմանել 15 կոպէկ, իսկ ապա՝ ստեղծել նրանց համար հնարաւորութիւն, որ ամեն մէկը իր ստացած փողով տեղն ու տեղը կարողանայ գնել իր ցանկացած ուտեստ և ամենաանհրաժեշտ կենսական պիտոյքները արժան գնով, առանց հարստահարման ենթարկուելու։

Այս հնարաւորութիւնը ստեղծելու համար հարկաւոր է հիմնել պ ա հ ե ս տ ն ե ր և ս պ ա ռ ո ղ ա կ ա ն խ ա ն ու թ ն ե ր։

Պահեստները պէտք է լինեն երկու տեսակի՝ առաջին և երկրորդ կարգի։

Առաջին կարգի պահեստները պէտք է լինեն երկուսը. նրանց նպատակը պիտի լինի մթերքներ մատակարարել ամբողջ Անդրկովկասում ապրող փախստականներին, դրանցից մէկը պէտք է հիմնել Բաքու՝ իբր մի կէտում, որը ցամաքով—երկաթուղու գծով միացնում է Ռուսաստանի հետ, որտեղից ստացւում են այժմ ամենայն պիտոյքներ, իսկ միւսը՝ Բաթում կամ Փոթի, որ ունի նոյն նշանակութիւնը և կապուած է Ռուսաստանի հետ ծովային ճանապարհով։

Իսկ մնացեալ պահեստները պէտք է բացուին փախստականների ապրելու մեծ վայրերում և դրանցից ամեն մէկը, իբր շր-

ջանային պահեստ, կը ծառայէ իր շրջանին։ Շրջանային պահեստից էլ մթերքներ կը բաժանուեն տեղացի փախստականներին և կուղարկուեն շրջանի կենտրոնատեղերի սպառողական խանութները։ Պահեստներում պէտք է ունենալ հետևեալ կարևոր մթերքները՝ ալիւր, աղ, շաքար, թէյ, բրինձ, հաճար, նաւթ, լուցկի և ծխախոտ։

Ամեն մի փախստական ստանալով իր դրամական նպաստը, ազատ կերպով և համեմատաբար աժան գնով կը գնի պահեստից կամ խանութից իր ցանկացած և հարկաւոր իրերը։ Շրջանային պահեստների թիւը պէտք է լինի 10-15 հատ։ Այժմ հարց է ծագում, թէ որտեղից պէտք է ստացուի պահեստներ հիմնելու գումարը, որքա՞ն գումար հարկաւոր կը լինի և ո՞ր մարմինը կարող է կազմակերպել և վարել գործը։ Այս նպատակի համար հարկաւոր գումարը պէտք է յատկացնի կառավարութիւնը պետական գանձարանից, քանի որ նա յանձն է առել փախստականների պահպանութեան գործը։ Ինչ վերաբերում է, թէ որքան գումար է հարկաւոր, այդ հարցը լուծելու համար պէտք է ի նկատի առնել, թէ նպաստ ստացող փախստականների թիւը որքան է և որքան նպաստ է տրւում մէկ ամսուայ ընթացքում և գէթ մէկ ամսուայ ծախսը. չափը կը լինի այն գումարը, որ հարկաւոր է պահեստները գլուխ բերելու համար։

Նպաստ ստացող փախստականների թիւը հասնում է 150,000 հոգու. այդ թւից երկու երրորդ մասը պէտք է համարել մեծեր, իսկ մէկ երրորդ մասը երեխաներ մինչև հինգ տարեկան հասակի, հետևապէս հարիւր հազար հոգու համար քսան կոպէկով հաշուած նպաստը, իսկ յիսուն հազարի համար հաշուած տասը և հինգ կոպէկով, օրական կը պահանջուի 27,500 ռ., իսկ մէկ ամսուայ համար, 825000 ռ.։ Ահա այն գումարը, որը հարկաւոր կլինի պահեստներ հիմնելու համար։

Այս գումարը վերջը պետական գանձարանը յետ կըստանայ բացի չնչին կորստից, որը առաջ կը գայ վարչական կարիքների և հաշուապահութեան համար կատարած ծախսերից Այդ կորուստը շատ աննշան կը լինի այն մեծ օգուտի հետ համեմատած, որը կը ստանան փախստականները։

Վերջապէս ինչ վերաբերում է երրորդ հարցին՝ թէ ում կարելի է յանձնել այս գործի կազմակերպելը և վարելը, մեր կարծիքով, կառավարութիւնը, վերապահելով իրեն հսկողութեանը դերը և իրաւունքը, գործը պէտք է յանձնի մեր ազգային հաստատութիւններից մէկին, որը իր կողմից կը հրաւիրի միւս կազմակերպութիւններին մասնակցելու և իրենց մէջ աշխատանքի բաժանում կատարելու։ Կասկած չկայ, որ սննդի հարցը այսպէս կազմակերպելով, չը պէտք է մոռանալ բաւարարելու փախստականների և միւս կարիքները։

Թէև բժշկական կարիքը հոգում է քաղաքների միութիւնը, թէև վերջին ժամանակներս մեծ քանակութեամբ շորեր են պատրաստում և ուղարկում գաւառները փախստականների համար, բայց էլի կարիքը դեռ մեծ է ու կատարուածը դեռ շատ հեռու է բաւարար համարուելուց։ Անհրաժեշտ է աւելացնել փոքրիկ հիւանդանոցների քանակը. հարկաւոր է բացել ֆէլդշերական կայաններ և փոքրիկ դեղատներ. հարկաւոր է կրկին շորեր պատրաստել և ուղարկել, որովհետև փախստականների մերկութիւնը դեռ բոլորովին չէ ծածկուած։

Եթէ այս ձևով կազմակերպուի փախստականների օգնութեան գործը, պէտք է յուսանք, որ վերջապէս փոքր ինչ կը թեթևանայ այդ հիւծուած, տանջուած, քայքայուած թշուառների ծանր կացութիւնը։

Ս. Յարութիւնեանց

## ԹԱՆԳՈՒԹԵԱՆ ԵՒ ԳԵՐԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ՀԱՐՑԻ ԱՌԹԻՒ

Եւրոպական պետութիւններում տիրող թանգութեան ընդհանուր պատճառների շարքում Ռուսաստանը ունի իր բնորոշ պատճառները, որ յատուկ են միայն մի կամ երկու եւրոպական պետութիւնների։

Այդ պատճառներից առաջինը ռուսական քաղաքների բնակչութեան հսկայական աճումն է, որոնք, կարելի է ասել, ծայրէ ծայր լցուած են փախստականներով։

Որքան էլ համակրելի միտք է փախստականներին աւելի կուլտուրական պայմաններում եղող քաղաքներում բնակեցնելը, այնուամենայնիւ պէտք է հաշուի առնուէր այն հանգամանքը, որ խոշոր կենտրոններին ուտեստի մթերք մատակարարելը, նոյն իսկ նորմալ ժամանակում, բաւականին դժուար խնդիր է։ Իսկ այժմ անչափ դժուար է և հազիւ թէ կարելի լինի քաղաքներին իրենց ահռելի աճման չափով մթերքներ մատակարարել։

Գիւղատնտեսական արդիւնաբերութեան կենտրոնների փոքր քաղաքները, հարկաւ, աւելի քիչ են տուժում ներկայ խիտ բնակչութիւնից, բայց այդ տեղերում էլ բնակարանների պակասութիւն է զգացւում, և այդ պատճառով բնակարանների թանգութիւն առաջանում։

Պէտք էր փախստականների այդ հեղեղը ուղղել գլխաւորապէս գիւղերը, իսկ աւելի քիչ մասը — խոշոր քաղաքները։ Սակայն գիւղերում էլ բնակարանները սակաւ են, թէև տեղ-տեղ հացը և գիւղատնտեսական այլ մթերքները առատ են, մանաւանդ Սիբիրում։ Ուստի վատ չէր լինիլ հետևել Իտալիայի կառավարութեան և Հռոմի քաղաքային ինքնավարութեան օրինակին, որոնք չորս գիւղ են հիմնել (քաղաք-այգիների տիպի), որպէսզի այդ վայրերում տեղաւորեն հայրենիք վերադարձած աշխատաւոր բնակչութեան աւելցած մասը։

Գալով յատկապէս վիրաւորներին և ինուալիդներին, որոնցով նոյնպէս լցուել են մեր մեծ քաղաքները, նրանց համար էլ հարկաւոր է Ֆրանսիայի օրինակով գիւղատնտեսական գաղութներ հիմնել, որպէսզի զինուորներին գիւղատնտեսութեան նոր եղանակներ սովորեցնեն։

Ի նկատի առնելով, որ գիւղատնտեսական արհեստանոցները ինուալիդների համար փակուած չեն, այլ, ընդհակառակը, նրանք այնտեղ հնարաւորութիւն կունենան աւելի հեշտ և առողջ պայմաններով իրենց ապահովելու, քան քաղաքային և գործարանային պարապմունքներում, հարաւ-արևմտեան Ֆրանսիայի կոօպերատիւ Միութիւնը Լիմոնեստի գիւղատնտեսական դպրոցի հետ միասին բացել է գիւղատնտեսական ինստիտուտ ինուալիդների համար։

Ինստիտուտը իրեն նպատակ է դնում՝ գտնել միջոցներ, գործիքներ, որոնք հնարաւորութիւն տային, օրինակ, մի ձեռքից զրկուածին գիւղատնտեսութեամբ պարապել։ Երկրորդ՝ ինստիտում սովորեցնում են հաշմանդամ ու վիրաւոր զինուորներին՝ իրենց թոյլ ոյժերին համապատասխան գիւղատնտեսական զանազան ճիւղերով պարապելու, ինչպէս՝ մեղուաբուծութեամբ, այգեգործութեամբ և բանջարաբուծութեամբ։

Սանդարի գիւղատնտեսական դպրոցը Լիմոնեստում (Լիոնից ոչ հեռու) նոր ինստիտուտի տրամադրութեան տակ է դրել բնակարան, գիւղատնտեսական գործիքներ և ուսուցչապետական կազմը։ Ուսուցչապետներից (պրոֆեսորներից) մինը այժմ մի գութան է հնարել, որով մի ձեռնանի մարդը կարող է հող մշակել։

Ակադեմիկոս Մ. Բարրեսը ինուալիդների համար գիւղատնտեսական ինստիտուտ հիմնելու առթիւ ուղղում է հարաւ-արևելեան Ֆրանսիայի կոօպերատիւների Միութեան նախագահ՝ ուսուցչապետ Ֆոնտգալլանին մի նամակ, ուր իր հիացմունքն յայտնելով ի միջի այլոց գրում է հետևեալը.— «Շատ յաճախ ինուալիդների օգնութեան գործով պարապողները ուղարկում են նրանց առևտրով կամ արդիւնաբերութեամբ պարապելու, արհամարհե-

լով գիւղատնտեսութիւնը։ Այդպիսիներից տարբերուելու համար մենք չենք մոռանում, թէ որչափ կորստաբեր հետևանքներ են ունենում քաղաքների գերբնակեցումը և ծերերի ու թոյլերի համար գործարանային աշխատանքը։ Մենք հաստատած ենք, որ գիւղացու շահը հրամայողաբար պահանջում է, որ գիւղացին կառչի հողին և շարունակի ապրել այնտեղ։ Եւ այդ դժուար չէ գիւղացու համար։ Մի ձեռնանին, փայտէ առով խեղանդամը կարող է հող մշակել, վարել, ցանել և տնկել։ Մեր բարեկամներից մէկը տեսել է մի ձեռնանի այգեգործ, որի նման ոչ ոք չէր կարող հող վարել։

Ֆրանսիայի երկրագործութեան մինիստրութիւնը, բացի ինուալիդների մասին հոգալուց՝ գիւղատնտեսական խոշոր ընկերութիւնների կամ կօօպերատիւների հետ միասին Պարիզում բացել է բիւրօ գիւղատնտեսական պարապմունքների համար աշխատող ձեռքեր ճարելու։ Աշխատանքի հրաւիրում են գլխաւորապէս փախստականներ ու գերիներ։ Ներքին գործերի մինիստրութեան հրատարակած օրէնքի զօրութեամբ՝ փախստականները իրաւունք չունեն հրաժարուելու գիւղ գնալուց գիւղատնտեսական աշխատանքով պարապելու, քանի որ վարձատրութիւնը բաւարար է։

Բացի հիւսիսային Ֆրանսիայից եկած ֆրանսացի փախստականներից, Պարիզում և Ֆրանսայի այլ մեծ քաղաքներում հաւաքուել են և բելգիացիներ, որոնք նոյնպէս հարկադրուած են օգտուել բիւրօյի ծառայութիւնից։ Ֆրանսիայի և Բելգիայի բանուորներին գիւղատնտեսական աշխատատեղին ձրի են տանում։

Նոյն դրութեան մէջ գտնւում են էլզասցի, չեխ և լեհ գերիները։

Ինուալիդներին և փախստականներին դէպի գիւղատնտեսական աշխատանք գրաւելով, Ֆրանսիայի կառավարութիւնը այդպիսով միաժամանակ ազատում է քաղաքները աւելորդ բնակչութիւնից և պահպանում գիւղատնտեսական արդիւնաբերութիւնը։

(Կը շարունակուի) Վ. Տատմեանց

---

## ՍՈՎԸ ՊԱՏՃԱՌ ՀԻՒԱՆԴՈՒԹԵԱՆՑ *)

II

Այժմ անցնենք այն հիւանդութիւններին, որոնք յաճախ երևում են սովի, պատերազմի և ամեն տեսակ անբարեպատեհ պայմաններում, երբ մարդու կազմուածքը թուլանում է, երբ տեղի է ունենում misère physiologique, այսինքն ընախօսական թշուառութիւն, ինչպէս որակում են ֆրանսացի բժիշկ հեղինակները**)։

Սովի և պատերազմի ժամանակ անխուսափելի է նախ և առաջ տ ի ֆ (յունարէն նշանակում է թմրութիւն, գիտակցութեան մթութիւն)։ Մեր հասարակ ժողովուրդը այդ հիւանդութիւնը կոչում է վարդահիւանդութիւն, իսկ թուրքերը՝ խաթալիգ, դատարամա, տաճկահայերը՝ ժանտարենտ։

Տիֆը լինում է երեք տեսակ՝ որովայնի, բծաւոր և յետադարձ, որոնցից ամենավտանգաւորն է բծաւոր տիֆը, որի մասին է այժմ մեր ասելիքը։

Ա. Բծաւոր տիֆը կոչւում է և սովային, պատերազմային, բանտային. անուններ, որոնք բացատրում են նրա ծագումը։

Յայտնի բժիշկ Ղուֆելանդը բծաւոր տիֆը կոչել է զինուորական ժանտախտ (военная чума)։ Եւ իսկապէս այդ հիւանդութիւնն է, որ պատերազմների ժամանակ աւելի ջարդեր է պատճառում։ Ղրիմի պատերազմին ռուսաց զօրքը գլխաւորապէս այդ հիւանդութիւնից 20 անգամ աւելի, քան սպանուածներ կորցրեց. 30,000 սպանուեցին, իսկ տիֆից մեռան 600,000. Կիրխները հաշւում է 800,000։

Եւրոպական պատերազմներին, 1733—1865 ժամանակ, մահացել են 8 միլիոն, որոնցից $1\frac{1}{2}$ միլիոն՝ կամ 19% զէնքից, իսկ հիւանդութիւններից $6\frac{1}{2}$ միլ., այսինքն՝ 81%. ասել է թէ $4\frac{1}{2}$ անգամ աւելի։ Նապոլէոնը ֆրանսացիներից հանել է 4, 5 միլիոն զինուոր, որոնցից 150,000 կոտորուեցին պատերազմի դաշտերում, իսկ 2, 5 միլիոն մեռաւ հիւանդանոցներում։ Ռուս-թրքական 77—78 թուականի պատերազմում տիֆից բռնուեցին Դանուբեան բանակում 100,000, իսկ Կովկասեան բանակում 40,000։ Մահացութեան տոկոսը սարսափելի էր և հասաւ մինչև 50%։

Այդ ժամանակ տիֆից մեռան հայ զօրավարներ Շելկովնիկեան, Լորիս-Մելիքեան, դուքս Լորիս-Մելիքեանի մօտիկ ազգականը, այլ և ռուս զօրավար Գէյմանը։

Ոչ մի վարակիչ հիւանդութիւն այնքան վտանգաւոր չի բժիշկների և առհասարակ հիւանդների հետ մօտիկ շփուողների համար, ինչպէս բծաւոր տիֆը։

Ղրիմի պատերազմի ժամանակ մահացութիւնը բժիշկներից 12, 88%, իսկ սպաներից՝ 0, 47։ Սերբիայում 400 բժիշկներից 200 հիւանդացել են տիֆով, որոնցից մեռան 60 հոգի։ Յայտնի ուսուցչապետ Էրիսմանի ասելով՝ Ռումինիայի Եաշի քաղաքում նախորդ պատերազմի ժամանակ բծաւոր տիֆով հիւանդացել են հիւանդանոցների ծառայողներից 71%, ֆելդշերներից 667. բժիշկներից էլ մեռել են 8. 360 գթութեան քոյրերից կենդանի են մնացել միայն 7 հոգի։

Բայց պիտի ասած, որ այժմ այդ հիւանդութիւնը այնպիսի ահռելի չափով երևան չի գալիս, ինչպէս առաջ էր։ Բաւական է յիշենք, թէ ռուս-ճապոնական պատերազմում շատ չնչին էր, որ բացատրւում է բժշկականութեան յառաջադիմութեամբ, այլև զօրքերի մասին եղած աւելի մեծ հոգատարութեամբ, համաձայն բժշկա-սանիտարական ցուցմունքների։

Այս տիֆը սարսափելի է սովի ժամանակ, երբ ազգաբնակութիւնը բաւարար սնունդ չստանալով, կորցնում է իւր դիմացկանութիւնը. երբ նրա կազմուածքը ստանում է, ինչպէս վերև ասեցինք, misère physiologique։

Այդպիսի դէպքեր մենք տեսած ենք մեր պաշտօնավարութեան ժամանակ գաւառներում, երբ մահացութիւնը սարսափելի չափերի էր հասնում։ Տեսել ենք ընտանիքներ գետնափոր նկուղներում մի այնպիսի թշուառութեան մէջ, երբ ընտանիքի հիւանդները և առողջները միևնոյն անկողնում էին պառկած… գիւղեր, ուր ամբողջ ընտանիքներ իսպառ-սպառ անհետացել են այդ հիւանդութիւնից։

Բծաւոր տիֆը գլխաւորապէս երևան է գալիս այն ժամանակ, երբ ազգաբնակութիւնը խռնուած ապրում է գետնափոր նկուղներում, մութ, խոնաւ, հակաառողջապահիկ պայմաններում, իսկ երբ անցնում է ձմեռը, սկսում է անհետանալ։

Ոչ սակաւ սովորական է տիֆը բանտերում, ուր յաճախ է պատահում։ Իբրև բանտային բժիշկ Ղազախում մենք գիտել ենք և կարող ենք ասել, որ մահացութիւնը այդտեղ շատ մեծ է լինում, սակայն աւելի սակաւ, քան գիւղերում սովի ժամանակ։

Բծաւոր տիֆի պատճառը. Դժբախտաբար ցարդ բծաւոր տիֆի մանրէն (միկրոբը) յայտնի չէ, ինչպէս որովայնի և յետադարձ տիֆերինը։ Անտարակոյս կըգտնուի և այդ անյայտ մանրէն, երբ աւելի խոշոր մանրադիտակ կունենանք, որովհետև այդ՝ ինչպէս և մի քանի վարակիչ հիւանդութիւններինը՝ ծաղկինը, քութէշինը և այլն, այնքան մանր է, որ անցնում է զտիչով (ֆիլտրով), ուստի և այդ մանրէները կոչւում են զտիչով անցնողներ։ Յայտնի է միայն այն, որ բծաւոր տիֆի թոյնը երևում է արեան մէջ։ Հանգ. ուսուցչ. Մաչուտկովսկին արել է վտանգաւոր փորձ իր վրայ։ Հիւանդի արիւնը սրսկելով ստացել էր շատ վտանգաւոր տիֆ, որ բարեբախտաբար յաջող ելք է ունեցել *)։ Ուրեմն բծաւոր տիֆ ունեցողի արիւնը պարունակում է այն թոյնը, որը դառնում է պատճառ տիֆի. այդ նշանակում է, որ

*) Տես «Համբաւաբեր» № 3։

**) Проф. Тарасовъ, „Заразн. болѣзни" 1915.

*) Проф. Филатовъ. Объ инфекц. болѣзняхъ дѣтей, стр. 125.

## ԱՄԵՐԻԿԱ ԳԱՂԹՈՂ ՀԱՅԵՐԻՆ

Պետրոգրադի Հայկ. Կենտ. Կոմիտէն խնդրում է հաղորդել ի գիտութիւն այն փախստականների, որոնք կամենում են գնալ Ամերիկա, հետեւեալը.

1) Արխանգելսկ քաղաքի վրայով, ձմրան ամիսներին դէպի Ամերիկա գնալը կապուած է մեծ դժուարութիւնների հետ։

2) Առանց Կովկասի իշխանութեան գրաւոր թոյլտուութեան Արխանգելսկի իշխանութիւնը չէ թոյլ տալիս ոչ ոքի անցնել արտասահման։

3) Չպէտք է վստահել Արեւելեան Ասիական ընկերութեան (Восточно-Азiатск. о-во) գնացքների երթեւեկութեան վրայ։

4) Արխանգելսկ հասնելիս պէտք է ունենալ իւրաքանչիւր հոգու համար 125-150 ռ.։

5) Ամերիկա մտնելու համար ամէն մի անձ պէտք է ունենայ առնուազն 100-150 ռ.։

---

## ԱԶԱՏՈՒԱԾ ՀԱՅԵՐ

Ալաշկերտի Ղարա-Քիլիսայից մեզ հաղորդում են, որ Մուշի նուաճումից յետոյ այդտեղ և շրջակայքում գտնուած հայերը՝ մօտ 2,000 հոգի արդէն հասել են Ղարա-Քիլիսա և մեծ նեղութեան մէջ են։

---

## Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ

I

### ՀԻՒԱՆԴԱՆՈՑ

Համաշխարհային աղէտաբեր պատերազմի պատճառով բազմաթիւ ընտանիքներ զրկուելով աշխատող ձեռքերից, նիւթական նեղ կացութեան մէջ ընկան։ Խաղաղ ժողովուրդը, որ մինչև պատերազմը զբաղուած էր իր ընտանեկան հոգսերով և խաղաղ կեանք էր վարում, պատերազմի պատճառով թողնում է իր՝ երկար տարիների ընթացքում ձեռք բերած տնտեսութիւնը, տունն ու տեղը, կարողութիւնը և այդ բոլորը անխնամ թողնելով բախտի բերմունքին, փախչում էր դէպի ապահով վայրեր, որպէսզի թշնամու անգութ սուրը իրան էլ չհասնի։

Փախչում էր, ով ինչպէս կարողանում էր. նա ժամանակ չէր ունենում վերցնելու հագուստ, անկողին և այդ զրկութեամբ փախչում էր կռուելով ձմրան դաժան ցրտի, մահաբեր քաղցի և տառապանքների դէմ։

Այս զրկութիւնը պատճառ էր դառնում զանազան հիւանդութեանց։ Մի կողմից թշնամու անգութ սուրը և միւս կողմից տարափոխիկ հիւանդութիւնները հնձում էին խաղաղ ժողովրդի մատաղ կեանքերը։

Այս աղէտներին աւելանում էր նաև վիրաւոր ու հիւանդ զինուորների հոգսը։ Մեր քաջ զինուորները, որոնք հայրենիքի պաշտպանութեան համար կուրծքերը դէմ էին անում թշնամու գնդակներին, վիրաւորուելով պատերազմի դաշտից վերադառնում էին բժշկուելու, կազդուրուելու, որպէսզի նորից դիմեն ռազմադաշտ՝ հայրենիքի պաշտպանութեան սուրբ գործի համար մարտնչելու։

Համաշխարհային պատերազմի ցաւալի աղէտները ցնցեցին ամբողջ մարդկութիւնը։ Ամէն մարդ զգում էր, որ իր քաղաքացիական և բարոյական պարտքն է՝ օգնել անմեղ զոհերին և աջակցութիւն ցոյց տալ պատերազմից վնասուածներին։

Կազմւում են բազմաթիւ յանձնաժողովներ, ընկերութիւններ, որոնք նուէրներ ու նպաստներ հաւաքելով օգնում են հիւանդ ու վիրաւոր զինուորներին, նրանց ընտանիքներին, փախստականներին և առհասարակ պատերազմից վնասուած անհատներին և ժողովրդին։

Կ. Հ. Բ. Ը-թիւնն եւս իր պարտքը համարեց հէնց պատերազմի սկզբից օգնութեան գործին օժանդակելու։

Այս նպատակով Ընկերութեան Խորհուրդը 1914 թուի յուլիս ամսին դիմեց Նորին Կայսերական Մեծութեան Կովկասի Փոխարքային և թոյլտուութիւն խնդրեց հանգանակութիւն բանալու կենտրոնական Խորհրդի և ճիւղերի վարչութիւնների միջոցով յօգուտ պատերազմի դաշտում ընկած և պահեստի զինուորների ընտանիքների։

Որպէսզի օգնութեան գործը գաւառներում աւելի նպատակայարմար և լայն ծաւալով կազմակերպուի և հայը օգնութեան գործում հանդէս գայ ազգովին, Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը Կովկասի Փոխարքայի թոյլտուութեամբ 1914 թուի սեպտեմբերի 14-ին հրաւիրեց մի համագումար, որին ներկայ էին նաև ռուսահայոց ազգային կուլտուրական և բարեգործական այլ հաստատութեանց ներկայացուցիչները։

Այդպիսի համագումար կարևոր էր այն տեսակէտից էլ, որ զանազան վայրերում գործելով և օգնութեան գործը կազմակերպելով, անտեղեակ էին մնում մէկը միւսի գործունէութեան և զանազան վայրերի կարիքի որակին և քանակին, որով գործը այն արդիւնքը չէր ունենում, ինչ որ կարող էր միասին գործելուց առաջանալ։

Համագումարը բացեց խորհրդի նախագահ Ս. Յարութիւնեանը, որ մի ճառով բացատրեց համագումարի նպատակն ու խնդիրները։ Գերապատիւ Մեսրոպ եպիսկոպոսն ընտրուեց պատուաւոր նախագահ, իսկ Պետական Դումայի անդամ Միքայէլ Պապաջանեանցը՝ նախագահ։ Համագումարը բազմամարդ էր. Ընկերութեան հանդէսների դահլիճը ծայրէ ծայր լի էր ժողովականներով։ Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհրդի առաջարկութեամբ ի միջի այլոց որոշուեց՝ ամբողջ ռուսահայութեան անունից վիրաւոր և կռուի դաշտից եկած հիւանդ զինուորների համար հաստատուած հիւանդանոցները շաղկապուեն և բոլորը կոչուեն «Հայկական Լազարէթ» և այլն։ Որոշուեց կազմակերպել ամենուրեք կոմիտէներ պահեստի զինուորների ընտանիքներին օգնելու համար։ Սակայն պատերազմից առաջացած անակընկալ և միմեանց անմիջապէս յաջորդող դէպքերն ու աղէտները հնարաւորութիւն չտուին համագումարի այդ գեղեցիկ որոշումը ամբողջապէս իրագործելու։

Քանի գնում ստուարանում էր պատերազմը, որ սկզբում եւրոպական պատերազմի բնոյթ էր կրում, բայց յետոյ փոխուեց համաշխարհային պատերազմի։

Որչափ մեծանում ու ընդարձակւում էր պատերազմը, նոյնչափ ստուարանում էին նաև աղէտները։ Անհրաժեշտ էր տասնեակ հազարաւոր վիրաւորուածների խնամելու գործին առաջնակարգ տեղ տալ։ Ամենուրեք հիմնւում էին հիւանդանոցներ, կազմւում էին սանիտարական խմբեր և այլն։ Կ. Հ. Բ. Ը-թիւնն էլ ի նկատի ունենալով այս պարագան, որոշում է Թիֆլիսում իր սեփական տանը 100 մահճակալից բաղկացած մի հիւանդանոց բանալ։

Այդ առթիւ խորհրդակցութեան են հրաւիրւում բժիշկներ պ. պ. Ա. Յարութիւնեան, Բ. Աղասարեան, Ս. Շահպարոնեան, Ա. Ծիեան, Գ. Շահպարոնեան, Ն. Ումիկեան և Մելիք-Նուբարեան, որոնք մշակում են ծրագիրն ու նախնական աշխատանքների ձևը՝ հիւանդանոց բանալու համար։

Այս գործը կազմակերպելու և նախնական աշխատանքները սկսելու համար կազմւում է մի մասնաժողով, որի անդամներն էին Ս. Յարութիւնեան, իշխ. Մ. Թումանեան, տ. Հ. Առուստամեան, բժ. Բ. Աղասարեան և Յ. Շահնազարեան, որոնք լիազօրութիւն են ստանում հարկաւոր դէպքում հրաւիրել կողմնակի անձանց, կազմելու մի յանձնաժողով ընդմիշտ հիւանդանոցի գործը վարելու համար։

Մասնաժողովը հրաւիրելով քաղաքից ձեռնհաս տիկիններ և կազմելով յատուկ յանձնաժողով՝ նախագահութեամբ իշխ. Մ. Թումանեանի նրանց էլ յանձնում է հիւանդանոցի գործը։

Յանձնաժողովը հոգում է հիւանդանոցի կահաւորումը։ Այդ առթիւ նոր մահճակալների, անկողինների, սպիտակեղէնի և այլ

իրերի պատուէրներ է տրում: Միեւնոյն ժամանակ ստացւում են նուէրներ, իրեր, մթերքներ զանազան անձերից և հաստատութիւններից:

Կահաւորման գործը վերջանալուց յետոյ կազմւում է բժշկական խումբը հետեւեալ ձեւով.— բժ. Աղ. Յարութիւնեան իր ընկերակից բժիշկ Գ. Մակարեանի և Վ. Վեսելաւզորովի հետ յանձն են առնում միասին առանց վարձատրութեան կանոնաւորել և ամուր հիմքերի վրայ դնել բժշկական մասը և ընդունել ընդմիշտ նրա պատասխանատուութիւնը, իսկ մշտական յատուկ բժիշկ հիւանդանոցի համար հրաւիրւում է բժշկուհի օր. Հ. Տիգրանեան: Հրաւիրւում են նաև մի վիրակապ— ֆելդշերուհի, երկու գթութեան քոյր, եօթը հիւանդապահ և մի կառավարչուհի, որ հսկելու է հիւանդանոցի տնտեսականին և կարգապահութեան վրայ:

Սկզբում հիւանդանոցը բացւում է 50 հիւանդի համար, սակայն ի նկատի ունենալով այն համակրութիւնը, որ հիւանդանոցը արժանացաւ հայ հասարակութեան կողմից, որոնք իրենց առատ նուէրներով օգնութեան եկան Խորհրդին, բացուեց հիւանդանոցի բաժանմունք Ընկերութեան կից գտնուած Հեջուբեանի տանը, և այսպիսով մանկանց թիւը հասաւ հարիւրի. բնականաբար շատացաւ հիւանդանոցի ծառայողների թիւը, և հիւանդանոցի այս բաժանմունքի կառավարութիւնը յանձնուեց մի մասնախմբի, որի անդամ հրաւիրուեցան տ. տ. Մ. Յարութիւնեան, Մ. Ղարաջեան և այլք:

—⁂—

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

«Համբուաբեր»ի խմբագրութիւնը շնորհակալութեամբ ստացաւ Ջիար գիւղից 35 ռ. 7. կ. գաղթական երեխայոց խնամող ուսուցչական կոմիտէին յանձնելու համար: Այդ գումարը ժողովել են նոյն գիւղի ուսուցչական խումբը գլխաւորութեամբ ուս. ուս. պ. Բանանեանի և հոգաբարձու պ. պ. Կաճկաճեանի և ճեմարանի աշակերտ Ա. Աւշարեանի:

Նուիրատուներն են՝

Պ. Պ. Յ. Բանանեան, Պ. Կաճկաճեան, Ջ. Ղուրուլեան, Յ. Կաճկաճեան, Մ. Ղուրուլեան, Պ. Կաճկաճեան, Ա. քահ. Դաֆամաճեան, Կ. Ղուրուլեան մի մի ռուբլի: Ն. Բաֆամաճեան, Տ. Կաճկաճեան, Խ. Պուլուզեան, Ն. Պուլուզեան, Ջ. Պուլուզեան, Կ. Խարազեան, Գ. Կաճկաճեան, Ն. Ղուրուլեան, Վ. Խարազեան, Գ. Փիփինեան, Գ. Կաճկաճեան, Ա. Փիփինեան, Բ. Փիփինեան, Ն. Ռոստոմեան, Պ. Բազգինեան, Ա. Բազգինեան, Տ. Տ. Դ. Բանանեան, Ն. Կաճկաճեան, Եղ. Կաճկաճեան, Վ. Ղուրուլեան, Ան. Կաճկաճեան, Ս. Փիփինեան, Մ. Ղուրուլեան, Պեղ. Դաֆամաճեան, Նազ. Կաճկաճեան, օր. օր. Վ. Բանանեան, Ս. Պուլուզեան, Ան. Ղուրուլեան, պ.պ. Ա. Սիմօնզուլեան յիսունական կոպէկ: Աղ. Սիմօնզուլեան, Տիկ. Սոնեա Կաճկաճեան, օր. Եղ. Աւշարեան քառասունական կոպէկ: Վասիլ Կաճկաճեան, տիկ. տիկ. Դ. Ղուրուլեան, Ան. Սիմօնզուլեան, Օլ. Դաֆամաճեան, Մար. Ղուրուլեան, պ. Միք. Խարազեան երեսունական կոպէկ: Լիզա Պուլուզեան քսանհինգ կոպէկ: Պ. պ. Ս. Կաճկաճեան, Ա. Սիմօնզուլեան, Միք. Կաճկաճեան, Ս. Կորկոտեան, Ա. Օհանեան, Բ. Կաճկաճեան, Ա. Խարազեան, Մ. Ղուրուլեան, տ. տ. Ս. Կորկոտեան, Ան. Տափինեան, Մ. Կաճկաճեան, Վ. Սիմօնզուլեան, Ն. Կաճկաճեան, Ն. Սուքիասեան, Ան. Պուլուզեան, Օլ. Օհանեան, Պ. Օհանեան, Ան. Ղուրուլեան, Կ. Ղուրուլեան, Մ. Ղուրուլեան, Մ. Բազգինեան, Շ. Բազգինեան, Գ. Կաճկաճեան, Վ. Օհանեան, Ս. Փիփինեան, Ն. Կաճկաճեան, Վ. Խարազեան, օր. Ռ. Պետրոսեան և Թ. Օհանեան քսանական կոպէկ: Աղէքս. Կաճկաճեան, տ. Եղիս. Սիմօնզուլեան տասնհինգական կոպէկ: Տ.տ. Ն. Կաճկաճեան, Բ. Փիփինեան, Լ. Օհանեան, Ոլ. Պապովեան, Կ. Կաճկաճեան, Ոլ. Կորկոտեան, Ոլ. Փիփինեան, Շ. Զարեքեան, Վ. Ղուրուլեան տասնական կոպէկ: Դպրոցի աշակերտութիւնից 2 ր. 32 կոպէկ:

Այս գումարն էս, որ առաջուայ ստացածների հետ անում է 142 ռ. 67 կ., խմբագրութիւնս տուաւ Կ. Հ. Բ. Ը-թեան՝ յանձնելու ըստ պատանելոյն:

***

Հ. Կենտր. Կոմիտէի փախստականների համար հագուստներ պատրաստելու արհեստանոցի 1916 թ. յունուարի 13-ից մինչև 26-ից

Ստացուել են կար անողներից՝

Վերմակներ 2,200 հատ, ներքնարկի մթէլներ 6,100 հատ, բարձի մթէլներ 560 հատ, զանազան տաք հագուստներ և սպիտակեղէն 11,600 կտոր:

Ուղարկուած են՝

Դիլիջանի որբանոցին 400 կտոր տաք հագուստ. Բաշ-գիւղի Կ. Հ. Բ. Ը. ճիւղին 200 կտոր. Մշեցի և Սասունցի գաղթականներին տրուած է 288 կտոր:

Փոխարքայի գիւմնատան միջոցաւ ուղարկուած են՝

Բորչալուի գաւառը 500 վերմակ, 500 ներքնարկի մթէլ և 500 բարձի. Ալէքսանդրապոլ, վերմակ 5,000, ներքնարկի մթէլ 5.000, իսկ բարձի՝ 5,000, այլ և զանազան տեսակի տաք հագուստ և սպիտակեղին 10,500 կտոր:

***

ՑԱՐՍԿԻԷ ԿՈԼՈԴՑԻ

Երեկոյթ. Մօտ օրերս այստեղ կայացաւ երեկոյթ յօգուտ Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղի գրադարան-ընթերցարանի՝ նախաձեռնութեամբ Յ. ք. Գրիգորեանի և Ա. Լիանոզեանի: Զուտ արդիւնք մնաց 80 ռ. 89 կ.:

Մի երեկոյթ էս ճիւղը կազմակերպեց ամարային թատրոն շինելու համար և եկամուտ ստացուեց 60 ռ.: Գանձապահ պ. Լեւոն Ամիրեանը խոստացել է տալ թատրոնի շէնքի փայտեղէնը:

***

Մինչև օրս Ցարսկիէ Կոլոդցի ճիւղը հանգանակել է և ուղարկել կենտրոնիս յօգուտ կամաւորների, փախստականների և պատերազմից վնասուածների մօտ 300 ռ. և 6 1/4 փութ չորեղէն:

***

ՏՈՒՓԵԼ

Կ. Հ. Բ. Ը-թեան Թիֆլիսի զանազան հաստատութեանց մէջ գրել է 33 կնքուած տուփեր յօգուտ չքաւորների և փախստականների:

Բաղաքային վարչութեան մէջ դրուած տուփից ստացուեց 130 ռ. 31 1/2 կ., որից մի հատը հարիւր ռուբլիանոց և մէկ տաճկական դրամ:

Խորհուրդը յայտնում է անյայտ նուիրատուներին իւր շնորհակալութիւնը:

***

ԴՊՐՈՑԱԿԱՆ ՆՊԱՍՏ

Կ. Հ. Բ. Ը-թիւնը շնորհակալութեամբ, ստացել է պ. Գասպար Տէր-Մարգարեանից իւր հայրենի Շրուինանց գպրոցի երկրորդ կիսամեայ նպաստը 1,250 ռուբլու փոխարէն 1,530 ռ.: Պ. Տէր-Մարգարեանը ի նկատի առնելով իւր դպրոցի աւագ ուսուցիչ պ. Գ. Տէր-Մինասեանի եռանդը, 280 ռուբլով աւելացրել է ռոճիկը:

***

ՆՈՒԷՐՆԵՐ

Կ. Հ. Բ. Ը-թիւնը իւր ճաշարանի օգտին շնորհակալութեամբ ստացել է Գէորգ ա. ք. Մեհրաբեանի միջոցով Ա. Բարալեանից ի յիշատակ հանգուցեալ Մարիամ Պապովեանի 50 ռ.:

***

ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՕԳՏԻՆ

Վելիսցիխէից պ. Նիկողայոս Տէր-Մովսիսեանից ստացուել է 78 ռ. 20 կ. հանգանակուած ձրագալոյցին:

Սուխումի ճիւղից նոյն նպատակին Ազով-Դոնեան բանկի միջոցով 200 ռ.:

***

չի ունեցել միմիայն գիտութեամբ պարապելու: Սկզբում երկար ժամանակ ուսուցչութեան, տեսչութեան և «Արարատի» խմբագրութեան պաշտօնները վարելով իր կեանքի ամենալաւ շրջանում չի կարողացել միայն գիտութեան նուիրուել, բայց և այնպէս նա բոլորովին յետ չի կանգնել գիտութիւնից: «Արարատ» ամսագրի համար՝ ամսէ ամիս գրելով կրօնական- բարոյական յօդուածներ և արձագանգ տալով մեր կեանքի ազգային- եկեղեցական խնդիրներին, նա միաժամանակ և բազմաթիւ պատմական յօդուածներ է զետեղել այնտեղ, գլխաւորապէս մեր եկեղեցական պատմութիւնից: Նրա գլխաւոր աշխատանքը սակայն այն է, որ գնահատելով ձեռագրերի պատմական արժէքը՝ հրատարակել է «Արարատի» մէջ, մի քանիսը նաև առանձին տպագրութեամբ. բազմաթիւ եկեղեցական յիշատակարաններ և թղթեր, ամեն անգամ բնագրերի համար յատուկ տեսութիւններ գրելով: Այդ բնագրերից մի քանիսը թարգմանուել են նաև եւրոպական լեզուներով, իսկ ուրիշների մասին եւրոպացի գիտնականները յատուկ ուսումնասիրութիւններ էլ են արել: Բայց որ գլխաւորն է՝ նա միջոց չունենալով շատ բան անձամբ անելու, միշտ աշխատել է եւրոպացի գիտնականների համար, ձեռագրերից արտագրելով, թարգմանելով կարևոր հատուածներ և առհասարակ կարևոր տեղեկութիւններ հաղորդելով նրանց. որով և հնարաւորութիւն է տուել նրանց շատ բան հրատարակելու համեմատութիւններով և լուսաբանութիւններով: Այդ ևս, անշուշտ, մեծ ծառայութիւն է գիտութեան համար:

Նրա ամենամեծ ծառայութիւնն ընդհանուր եկեղեցու պատմութեան համար այն է, որ նա Երևանի Թեմական փոխանորդութեան միջոցին՝ այդ քաղաքի մի եկեղեցու ձեռագրերից մէկի մէջ ի միջի այլոց երևան է բերել 2-րդ դարի շատ նշանաւոր մի հեղինակի, եկեղեցու հայր Ս. Իրենոսի գրուածքների հայերէն թարգմանութիւնները, որոնցից մէկը՝ «Ցոյցք առաքելական քարոզութեան» միայն անունով է յայտնի եղել: Գիտական աշխարհի համար այդ մի մեծ գիւտ էր, որ և Երուանդ Տ. Մինասեանի աշխատակցութեամբ թարգմանում է նա գերմաներէն, և թարգմանութիւնը հայերէն բնագրի հետ տպագրում է նշանաւոր ուսուցչապետ Հառնակի ծանօթութիւններով: Նոյնը թարգմանւում է ապա ռուսերէն և անգլերէն:

Այսպիսի հին հայերէն թարգմանութիւններից է և 5-րդ դարու նշանաւոր հեղինակ Տիմոթէոս Կուզի գրուածքներից մէկը Քաղկեդոնի ժողովի դէմ, որի բնագիրը նոյնպէս կորած է: Այս գրքի հայերէն թարգմանութիւնն ևս հանգուցեալը գտնում է Էջմիածնի ձեռագրերի մէջ և հայերէն բնագիրը գերմաներէն թարգմանութեան հետ և յառաջաբանով հրատարակում է Եր. Տ. Մինասեանի հետ: Այս գիրքը մեծ կարևորութիւն ունի ոչ միայն ընդհանուր եկեղեցու պատմութեան համար, այլ իր յունաբան լեզուով շատ կարևոր է նաև հայ լեզուի և գրականութեան շրջանները որոշելու համար և արդէն նիւթ է դարձել ուսումնասիրութեան ոչ միայն պատմական, այլ գրական ու լեզուական տեսակէտներով:

Հանգուցեալի առանձին գրքերով տպագրուած աշխատանքներից յիշատակենք «Հայոց եկեղեցու պատմութիւնը», առաջին մասը մինչև 552 թ. «Ազգային եկեղեցի», «Սուրբ մեռոնի օրհնութիւնը» պատմական տեսութիւնը և «Նիւթեր հայ մելիքութեան մասին, Դոփեանք և Մելիք-Շահնազարեանք»: Բացի վերջինից, որ հայ ազնուականութեան պատմութեանն է վերաբերում, մնացած աշխատութիւնները պատկանում են ընդհանուր և հայոց եկեղեցու պատմութեանը: Մի կողմ թողնելով նրա բազմաթիւ յօդուածներն «Արարատ»ի մէջ, այստեղ չենք կարող չյիշել նրա մի մեծ աշխատութիւնը՝ «Յովհան Մանդակունի և Յովհան Մայրագոմեցի», որ տպուած է «Շողակաթ» ժողովածուի մէջ:

Մ. Աբեղեան

(կը շարունակուի)

## ՆՈՐ ԳԻՒՏԵՐ

Պատերազմը նոր զարկ տուաւ մանաւանդ զինուորական արուեստին (տեխնիկայ) և հնարեց նորանոր գործիքներ մարդիկ ոչնչացնելու: Սակայն այդ հնարքները մէկը կամ միւսը շատ անգամ առնում են վնասների առաջ և շատ օգտակար դառնում մարդկութեան:

Պատերազմի ընթացքում Գերմանիան պարծենում է իր երկու նոր գիւտով. առաջինը այն է, որ հնարել է այնպիսի գործիք, որով կարելի է ոչնչացնել հեռաւոր տարածութեան վրայ գտնուող ամեն տեսակ ցանցային պատնէշներ և ազատ ճանապարհ բանալ դէպի թշնամու բանակը: Իսկ երկրորդը՝ անհատեսիլ և գաղտնածածկ մի ինքնաշարժ է (աւտոմոբիլ) երկաթէ անիւներով, որ ճանապարհին ոչ մի անհարթութեան առաջ կանգ չի առնում և կարող է անվնաս հասնել մինչև թշնամու խրամատները.

Ֆրանսայում կրկնակի փորձերից յետոյ հնարուած է սաւառնակների (այերոպլան) ամենակատարելագործուածը, որին կոչում են «l'avion de bombardment» (ռմբակոծող ինքնաթռիչ), որ հսկայական մի օդանաւ է: Նրա մէջ տեղաւորւում են 12 մարդ, 4 թնդանօթ իրենց բոլոր պարագաներով. և նա կարող է թռչելու ժամանակ իսկ կրակ բանալ թշնամու դիրքերի վրայ քան թէ ամենալաւ հրետանին:

Ֆրանսացիք ունեն մի այլ տիպի սաւառնակ ևս, որ մի ժամում կտրում անցնում է 150 վերստ տարածութիւն:

Ամենաապշեցուցիչ և զարմանալին այդ բոլորից յետոյ անթել հեռախօսի հնարումն է: Մարդկային կենդանի խօսքը աշխարհի մի ծայրից մինչև միւս ծայրը անցնում է մի ակնթարթում: Եւ ահա առաջին անգամ Պարիզն է, որ ականատես է եղել այդ հրաշքին: Սեպ. 11-ին գիտնականների և մասնագէտների մի խումբ բարձրանալով Էյֆէլեան աշտարակի վրայ, ականջ է դրել և լսել Ամերիկայի կողմից հասնող ձայնը մօտաւորապէս 5000-6000 հազարամետր տարածութիւնից: Անթել հեռախօսի հեղինակն է ինժեներ Ջօն Մօժէրս:

—:—

Ամերիկական «Scientifi: American» ժուռնալը գրում է, որ Հիւսիսային Ամերիկայի «Ինդիանա» նահանգում փորձեր են եղել ինքնաշարժը (աւտոմոբիլը) անթել հեռագրի օգնութեամբ ղեկավարելու: Ինքնաշարժը 5 վայրկեան ղեկավարուել է անթել հեռագրով առանց մարդու և անցել է $7\frac{1}{2}$ վերստ:

Այսպիսով կարելի է խուժել թշնամու երկաթէ լարերից կազմուած ցանցապատերը, պատռել դիւրութեամբ և ահագին քանակութեամբ պայթուցիկ նիւթեր թափել թշնամու շարքերը ևն:

Անտարակոյս ներկայ պատերազմից յետոյ՝ ներկայ համաշխարհային պատերազմի թատերաբեմի գիւղացութիւնը շատ մեծ զոհեր է տալու, որովհետև շատ ռումբեր ընկնելով գետնի վրայ չեն պայթել ու այդպէս էլ մնացել են հողի մէջ, որոնք կարող են դիպչել գութանի խոփին ու մեծ վնասներ հասցնել:

Ֆրանսիայ գիտութեանց ճեմարանը գտել է չը պայթած ռումբերը ոչնչացնելու հնարը: Այդ մի գործիք է երկու մեծ մաւթուլի կծիկներով, որի միջոցով անցնում է ելեքտրական հոսանք: Կծիկները միացած են Հիւզըսի հնարած մանրակայծի (միկրոֆոն) հետ մեղմ ձայնն ուժեղացնելու համար:

Հէնց որ գործիքը մօտենում է որևէ մետաղի կտորի, մանրաձայնի մէջ լսւում է ուժեղ ձայն: Այս միջոցով, որ յայտնի էր ֆիզիկոսներին, այժմ կարելի է ոչնչացնել և հողում գտնուած պայթուցիկ նիւթերը:

Երկու մարդ մի ժամում այս ձևով կարող են հետախուզել դաշտը մօտ մի օրավար (ակր):

———

# Քրոնիկոն

Փոխարքայի կարգադրութեամբ Կովկասի գերմանացոց գաղութների անունները փոխել են։ Մեծ մասին տրուած է ռուսերէն անուն, երկուսին վրացերէն և մէկին՝ հայերէն։

* * *

Վաճառականական բանկի դիրեկտոր Մ. Ի. Բեբրերեանը նշանակուած է Թիֆլիսում Սպանիայի փոխ-դեսպան։

* * *

Սանահնի փախստականների որբանոցում երևացել է բծաւոր տիֆ։ Հիւանդացել են 170 երեխաներից 28 հոգի, որոնցից երկուսը մեռել են։ Քաղաքների միութիւնը ուղարկելով բժիշկ, ֆելդշեր և կազմելով փոքրիկ հիւանդանոց՝ դիմել է գեն.-մայոր Թամամշևին և խնդրել Սանահինում բանալ բծաւոր տիֆով հիւանդների համար հիւանդանոց 35 մահճակալով։

* * *

Թիֆլիսի իրաւատուներ ընտրողների ցուցակների ստուգումը շուտով կը վերջանայ և 10-15 օրից յետոյ կը հրատարակուի։ Իրաւատուների ընտրութիւնները տեղի կունենան մօտաւորապէս փետրուարի սկզբներին։

* * *

«Մեղու» ընկերութիւնը դիմել է Թիֆլիսի նահանգապետին և խնդրել՝ Թոյլ տալ ի յիշատակ հանգուցեալ Սաթենիկ Օհանջանեանի գրադարան բանալու։

* * *

Բագւում յառաջիկայ շաբթում կը ներկայացուի անցեալ սեզոնում մեծ յաջողութիւն գտած Լէօի «Մելիքի աղջիկը» դրաման, հեղինակի փոխադրութեամբ։ Այս ներկայացման առթիւ հեղինակը Թիֆլիսից Բագու է հրաւիրուել։

* * *

Կայսերական հրովարտակով փետրուարի 9-ին բացւում է Պետական Դուման, որի քննութեան առաջին խնդիրը լինելու է պետութեան բիւջէն, իսկ փակման ժամանակն անորոշ է։

* * *

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը միջնորդել է Վեհափառ Հայրապետին, որ պ. Գասպար Տէր-Մարգարեանցին, որը յայտնի է իբրև մեկենաս, հաստատէ իւր ծախքով պահուող իւր հայրենի Շրուանենց գիւղի դպրոցի «պատուաւոր հոգաբարձու»։

Վեհափառ Հայրապետը բարեհաճել է յարգել Խորհրդի միջնորդութիւնը, ուղարկելով հաստատութիւնը և օրհնութեան կոնդակ հանդերձ դիւանական գրութեամբ յանուն Խորհրդի «յանձնել ըստ պատկանելոյն»։

* * *

Յունուարի 28-ին Թիֆլիսում երկարատև հիւանդութիւնից յետոյ վախճանուեց Թիֆլիսի Քաղաքային Վարչութեան պաշտօնեայ Նիկողայոս Միրիմանեանց, որը կտակով իր ամբողջ կարողութիւնը՝ մօտ 10,000 ռ. արժէթղթեր թողել է Կ. Հ. Բ. Ընկերութեան։ Կտակատարներն են՝ ինժեներ Ա. Մելիք-Բէգլարեանց և Ս. Յարութիւնեանց։

* * *

ԳՐԱԿԱՆ ՆՈՐՈՒԹԻՒՆ

Մեր ականաւոր հեղինակ պ. Շիրւանզադէն պատրաստում էր այս թատրոնական սեզոնի համար մի պիէս «Արեան օրեր» վերնագրով, բայց կը հասցնի միայն մեծ պասին, Բագուի սեզոնի Աբելեան խմբի համար։

---

ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ Տ. ԶԱՊԷԼ ԵՍԱՅԵԱՆԻ

Փետրուարի 6-ին, շաբաթ օր, Ժողովարանի դահլիճում երեկոյեան ժամի 8-ին դասախօսելու է տ. Զապէլ Եսայեանը «Տաճկահայերի հալածանքները» նիւթի մասին։ Տիկին Զապէլ դեռ երիտասարդական հասակում է. Տաճկահայ հեղինակուհիներից, կարելի է ասել, առաջինն է և Զոհրապից յետոյ ամենալաւ արձակ ոճաբանն (ստիլիստ)։ Աշխատակցել է «Մասիս», «Անահիտ» և «Ազատամարտ» թերթերին։ Ունի բազմաթիւ պատմուածքներ, այլև յօդուածներ առօրեայ հրատապ խնդիրների մասին։ Նշանաւոր է նրա «Աւերակների մէջ» գրուածքը, որ Կիլիկիայի ջարդերն է նկարագրում, Ադանայի ջարդերից անմիջապէս յետոյ այնտեղ ուղևորուելով. մի գրուածք, որ ոչ միայն պատմական, այլև գեղարուեստական նշանակութիւն ունի։ Տիկինը եռանդուն մասնակցութիւն է ցոյց տուել ազգային գործերին Պարիզում, Պոլսում և այժմ մեզանում։

# Հայ թատրոն

Երկուշաբթի, յունուարի 24-ին, հայ գեղար. ընկերակցութիւնը Արտիստական թատրոնում տուեց հայ Դրամատիկ ընկերութեան՝ իր gala- ներկայացումը, որ էր Ա. Բեռնշտայնի 3 արար. «Իսրայէլ» դրաման։

Դրէյֆուսի ձախող դատից յետոյ Ֆրանսայի արքայականները յենուելով ազնուական մի խմբակի ոյժին, սկսեցին հակահրէական պրոպագանդ մղել։ Ա. Բեռնշտայն իր այս դրամայի նիւթը հէնց այդ շարժումի օրերից է վերցրել։ «Իսրայէլ»-ը առաջին անգամ բեմադրուեց Պարիզում և ֆրանսական հասարակութեան մէջ համակրանքի և հակակրանքի տեղի տուեց։ Ա. Բեռնշտայնը հրէայ լինելով, մի քանի քննադատներ յարձակուեցին նրա վրայ առարկելով, թէ հեղինակը գեղարուեստի դիմակին տակ հրէականութիւնն է պաշտպանում, սակայն մի քանի տաղանդաւոր քննադատներ փաստերով հերքեցին այդ գիտումնաւոր և կողմնակալ կարծիքները։

«Իսրայէլ»-ը նրանով հետաքրքրական է, որ գործողութիւնների պարզութեան տակ գնում է խոր և զօրաւոր հոգեբանութիւն։ Անխօս տառապանքի, խանդավառ փառքի, անձնուրաց սիրոյ և վհատման պատկերները այնտեղ իրար յետևից ելևէջում են ինչպէս երաժշտական հնչեակներ՝ գունազեղ շաղկապումով։

Պ. Սուրաբեանը եթէ մի քիչ յղկուած և նուրբ ձևեր ունենար, կարող էր ֆրանսացի ազնուական Դը Ժիւվէնը ներկայացնել։

Պ. Մկրտիչեանը—իր դերումը չէր, նամանաւանդ երրորդ արարուածում նրա դիմայարդարումը (գրիմմ) կատարեալ ծիծաղ էր շարժում ծառայի դերում. և պարոնը չէր աշխատել մի որևիցէ բանով տարբերուելու առաջին տեսարանում ամերիկացի հարուստի՝ և երրորդ տեսարանում ծառայի դերերում։ Մեր երիտասարդ դերասանները պէտք է շատ աշխատեն իրանց նրբաճաշակութեան և զարգացման համար։

Պ. Մանուէլեան—Կոմս դը Գրիմենուայի դերում ֆրանսացի չէր. նա ինձ յիշեցրեց Շիլլերի Շուարցը իր խոժոռ նայուածքով և բառերին խորհրդաւորութիւն տալով։ Սակայն պ. Մանուէլեանը յաջողում է տալ արտաքին նուրբ շարժումներ ու ձևեր։

Պ. Մամիկոնեանը (Մարկիզ դը Մօվ) եթէ տրամադրութիւն ունենար այդ երեկոյ, անպայման աւելի լաւ կը տանէր իր դերը։ Նա երբեմն բոլորովին աւելորդ տեղ ծիծաղում էր. օր. «Նա խակոյն կգայ, հա, հա, հա»։ Բեմի վրայ ձեռքի մի շարժումը, աչքերի մի հայուացքը և կամ ծիծաղը պէտք է որ իրենց պատճառներն ունենան։

Պ. Սևումեանը, (հրէայ Ժիւստին Գիւլտիպ)․ սառն, զգայուն, տանջուած, ահա ինչ որ պահանջում էր իր դերը, և պէտք է ասել, խիստ պատուաւոր կերպով կարողացաւ գծագրել Գիւլտիպի պատկերը։ Շնորհալի և նուրբ դերասան է Սևումեանը մանաւանդ լուռ և ներքնազգաց դերերում։

Պ. Վ. Փափազեան (Տիրօ իշխան դը Կլարը)․ ուսումնասիրուած նրբութեամբ, ազնուական ճկուն շարժ ու ձևերով և վարպետ դիմախաղով—ահա Փափազեանը այդ երեկոյ։

Երկրորդ արարուածում նա հետզհետէ կարողացաւ տալ հոգու յեղաշրջումները, բարկութիւնը, զարմացումը, հետաքրքրութիւնը, կասկածն ու հիասթափութիւնը։ Նկատելի է, որ նա թողել է արագ խօսելու ձևը և նրա խօսքերը այժմ հասկանալի են։

Միւս դերասանների համար օրինակելի է նրա առոգանութիւնը և արուեստի ճշգրիտ ըմբռնումը։

Պարոնը եթէ ծուլութեան հետ կապուած իր դաշինքը քանդի, նա յառաջիկայում մեր հայ բեմի առաջնակարգ արուեստագէտներից մէկը կը դառնայ։

Տիկին Սիրանոյշ, (Ագնէս, դքսուհի դը Կրուսի). մայրական քնքշութիւնը և խանդոտ զգացմունք և հեգնոտ կանացիութիւն — ահա տիկնոջ բեմական ազդակները, որոնցով այսպէս բարձրացել է շնորհալի դերասանուհին գեղարուեստի 9 երրորդ աստիճանի վրայ։ Եւ դքսուհու դերում այդ բոլոր յատկութիւնները զուգորդուած լինելով, տիկինը քիչ քննադատելի կողմեր ունեցաւ։ Նա երրորդ գործողութեան վերջին տեսարանում հրաշալի էր։ Ափսոս որ քիչ պակասել է նրա արծաթէ ձայնը։

Բեմայարդարումը բաւարար էր։ Եւ խաղն անցաւ խիստ յաջող։

Ներկայացումից վերջ եղաւ Զաւեշտ, արտասանութիւններ պ. Փափազեանի և տիկ. Սիրանոյշի կողմից։ Տիկին Սեւումեան Ա. Տէր-Ղեւոնդեանի հետ՝ (դաշնամուրի ձայնակցութեամբ) երգեց ժողովրդական երգեր։

Հասարակութիւնը պ. Փափազեանին, տ. Սիրանոյշին, պ. և տ. Սեւումեանին մի քանի անգամ բեմ հրաւիրեց բուռն ծափահարութեամբ։ Դահլիճը լիքն էր։

A—V

# Արտաքին տեսութիւն

Տաճկաստանի ներկայ վարիչների քաղաքական ոճիրների վրայ վերջին շաբաթս աւելացաւ մէկը ևս. այդ Թագաժառանգ Իւսուֆ-Իզէդդինի սպանութիւնն է։ Պաշտօնապէս այդ սպանութիւնը որակուեց իբրև ինքնասպանութիւն. — Իւս.-Իզէդդինը, որ երկար ժամանակից ի վեր տառապում էր հոգեկան հիւանդութեամբ, վերջերս որոշում է գնալ Բեռլին բուժուելու համար. բայց մեկնելու նախօրեակին, ամենքի համար անսպասելի կերպով, կտրում է իր ձեռքի երակները և արնաքամ լինելով մեռնում — ահա այն բացատրութիւնը, որ տալիս են այս սպանութեանը Էլդզի այժմեան ժառանգները, և նրանց գործակից գերմանական դիւանագէտները։

Սակայն ով ծանօթ է Տաճկաստանի պետական մարդկանց քաղաքական պայքարի ձևերին և, միւս կողմից, գիտէ թէ ինչ յարաբերութիւններ էին իշխում Իւս.-Իզէդդինի և երիտասարդ-Թուրքերի միջև՝ նրա համար պարզ կլինի այս պաշտօնական հաղորդագրութեան ամբողջ ստութիւնը։

Քաղաքական հակառակորդներին դաւադրական սպանութիւնների միջոցով վերացնելը Տաճկաստանում անցեալի աւանդութիւններով սրբագործուած մի մեթոդ է։ Աւելի հեռուն գնանք. այդ մեթոդով էր, որ երիտասարդ Թուրքերի նախորդները 1876 թուին վերացրին սուլթան Ազիզին. այդ մեթոդով էր, որ Էնուերն ու Թալաաթը չէզոքացրին Տաճկաստանի լաւագոյն զինուորականներից մէկին — Նազիմ փաշային, որ խոչընդոտ էր հանդիսանում իրենց քաղաքական դիկտատուրային. վերջապէս այդ մեթոդին զոհ գնաց և Մահմուդ Շէւքէթ փաշան՝ երիտասարդ Թուրքերի զինուորական առաջնորդը։ Իւս.-Իզէդդինի սպանութիւնը, որ այսօրինակ քաղաքական ոճիրներից մէկն է, զարմանալի նմանութիւն ունի իր հօր — սուլթան Ազիզի սպանութեանը. նրան էլ մի առաւօտ գտան իր արեան մէջ լողալիս և նրա համար էլ ասացին, թէ հոգեկան հիւանդութեամբ տառապելով՝ կտրել է իր ձեռքի երակները...

Թագաժառանգի և երիտասարդ Թուրքերի լարուած յարաբերութիւնների մասին վաղուց է ինչ խօսւում է։ Ասում էին, որ Իւս.-Իզէդդինը վճռականապէս հակառակ է թիւրք-գերմանական զինակցութեանը և այս հողի վրայ նրա ու Էնուէր փաշայի միջև մի քանի անգամ չափազանց սուր ընդհարումներ են եղել։ Վտանգաւոր հակառակորդից ազատուելու համար անցեալ տարի երիտասարդ Թուրքերը աշխատում էին շէյխ-ուլ-իսլամից ֆեթուա ստանալ՝ թէ Իւս.-Իզէդդինը հոգեկան հիւանդ է և չի կարող գահաժառանգ համարուել, որպէս զի նրան սուլթան Մուրադի պէս, կենդանի թաղէին Պոլսի արքայապալատներից մէկում։ Բայց երբ այս ծրագիրն ինչ-ինչ պատճառներով չի յաջողւում — նրանք կարճ են կապում. աւանդական միջոցով վերջ են տալիս հակառակորդի կեանքին և խնդիրը փակում։

Սակայն Պոլսի քաղաքական անցուդարձին լաւատեղեակ Շէրիֆ-փաշան, որ Պարիզում իր «Mècheroutiette» թերթի միջոցով շարունակ մերկացրել է երիտասարդ թիւրքերի մութ արարքները, այս անգամ ևս չթողեց, որ նրանք քողարկեն իրենց ոճիրը։ Նրան ձայնակցեց այս գործերում մինչև պատերազմը Պոլսում հրատարակուող «Levant Herald»-ի խմբագիր Էմիլ Դայլին, որ իբրև Իւս. Իզէդդինի մտերիմ բարեկամը լինելով՝ շատ լաւ տեղեակ է այն թակարդներին, որ լարել էին երիտասարդ թիւրքերը նրա շուրջը։ Այս երկու մարդկանց մերկացումները և Պոլսից, Աթէնքից և Բուքարեստից ստացուած վերջին հաղորդակցութիւնները այսօր այլևս կասկած չեն թողնում, որ իշխան Իւս. Իզէդդինի «ինքնասպանութիւնը» ոչ այլ ինչ է, բայց եթէ մի լեգենդա երիտասարդ թիւրքերի նոր քաղաքական ոճիրը քողարկելու համար։

Գերմանական մամուլի օրգանները վերջերս խիստ ակներև նեարդայնութիւն են երևան հանում «Ռումանական գործերի» հանդէպ. Նրանց կարծիքով Ռումանական սֆինքսը կամաց-կամաց ցոյց է տալիս իր իսկական դէմքը, որ այնքան էլ չէ ժպտում իր արևմտեան և հարաւային հարևաններին։ Գերմանացիներին անհանգստացնողը նախ և առաջ այն է, որ Ռումանիան՝ չնայած պարլամենտի միանգամայն առօրէական ճառերին, իր զինուորական ուժերի գրեթէ ¼ մասը զէնքի տակ է պահում և, որ գլխաւորն է, այդ զինուորական ուժերը կենտրոնացած են մեծ մասամբ Տրանսիլուանիայի և Բուլղարիայի սահմաններում։ Այնուհետև՝ գերմանացիներին անհանգստացնում է այն մտերմութիւնը, որ ցոյց է տալիս Ռումանիան դէպի Անգլիան։ Այն ժամանակ, երբ Գերմանիան հացի սարսափելի կարիք ունի՝ Ռումանիան իր հացը ծախում է Անգլիային, որ ոչ կարիք ունի և ոչ էլ հնարաւորութիւն տանելու այդ հացն իր երկիրը։ Գերմանացիների կարծիքով Ռումանիայի կառավարութիւնը այս տարօրինակ առուծախի հանդէպ անտարբեր չէր մնայ, եթէ գաղտնի կապեր չունենար Անգլիայի հետ։ Եւ կարծէք այս կասկածները հաստատելու համար, վերջերս տեղեկութիւն ստացուեց, որ Ռումանիան Անգլիայում մօտ հարիւր միլիոն ռուբլու փոխառութիւն է կնքել...

Եթէ ի նկատի ունենանք Ռումանիայի շուրջն ստեղծուած ռազմա-քաղաքական վիճակը, կըտեսնենք, որ գերմանացիների կասկածները Ռումանիայի հանդէպ այնքան էլ զուրկ չեն հիմքերից։ Տաճկաստանը չի կարողանում ոչ ռուսների առաջխաղութիւնը կանգնեցնել և ոչ էլ անգլիացիներին դուրս մղել Միջագետքից։ Բուլղարիան Մակեդոնիան գրաւելուց յետոյ անշարժութեան կէտի վրայ մնացել է կանգնած, իսկ աւստրո-գերմանացոց բոլոր ջանքերը՝ արևմտեան կամ արևելեան ճակատների վրայ թշնամիների շղթան պատռելու՝ միանգամայն ապարդիւն են անցնում։ Պարզ է, որ Ռումանիան ներկայումս աւելի շատ «անգլիական» օրիենտացիա պէտք է ունենայ, քան գերմանական։

Այս բոլորից յետոյ էլ, ի հարկէ, ռումանական սֆինքսը մնում է սֆինքս, սակայն գերմանացիք, իրաւ որ ներկայումս հիմքեր չունեն նրանից ժպտուն պատասխան սպասելու իրենց տանջող հարցերին.

ոքը լցուած էր կանանց ու երեխաների դիակներով։ Այստեղ հասածները որոշում են բաժանուել խմբերի և թաքնուել՝ ոմանք Մուշի այգիներում, ոմանք Մուշի հովտի գիւղերի մարագներում։

Այստեղ ևս նրանց հանգիստ չեն տալիս։ Հայերին բնաջնջելու համար յատուկ կազմուած զինախմբերը, որոնք կոչւում էին «Հասան-Թարուրի», այսինքն «մորթողների խմբեր», խմբակների բաժանուած՝ զբաղւում էին հայերին որսալով լեռներում ու անտառներում։

Մի քանի հոգի խիզախում են անցնել ռուս զօրքի կողմը, թէև ստիպուած են լինում ճանապարհին թողնել իրանց երկու ընկերին, որոնք թուլութիւնից այլևս անկարող են լինում քայլել։

## ԱՆԳԼԻԱՑՈՑ ՀԱՅԱՆՊԱՍՏ ՆՈՐ ԿՈՄԻՏԷ

Այս արհաւիրքներից շուարած, սահմռկած և զարհուրած հաընթերցողը պէտք է սակաւ ինչ մխիթարուի լսելով, որ քաղաքակիրթ աշխարհը ոչ միայն զզուանքով ու զարշանքով է նայում Թուրք կառավարութեան այս գազանութեանց վրայ, այլև աշխատում են սփոփել մեզ, մեր համազգային անլուր աղէտը թեթևացնել, օգնութեան հասնելով օսմանցոց գազանութիւններից ճողոպրած հայոց մնացորդներին՝ գործ, աշխատանք, դրամական և այլ նպաստներ հասցնելով։ Մենք պէտք է երախտագիտութեամբ յիշենք և իմանանք այդ մեծ և մարդասէր ժողովրդի արժանաւոր զաւակների անունները։ «Համբաւաբերի» ընթերցողներն արդէն գիտեն Ամերիկայում և Ֆրանսիայում կազմուած հայանպաստ ընկերութեանց և գլխաւոր գործիչներից գոնեա ոմանց անունը։ Այժմ Լոնդոնում կազմուած «Հայ փախստականների (Լորդ քաղաքագլխի) ֆոնդ» ընկերութեան, որ մօտ 180,000 ս. է ուղարկել Կ. Հ. Բ. Ը-թեան, գլխաւոր ղեկավարներն են՝

Նախագահ՝ Լոնդոնի Լորդ-քաղաքագլուխը, փոխ-նախագահներ՝ Կենտրբըրըրի Արքեպիսկոպոսը (պետը Անգլիական պետական եկեղեցու), Եօրկի Արքեպիսկոպոսը (երկրորդ բարձրագոյն հոգևորական անգլիայում), Ծիրանաւոր (Կարդինալ) Բօրն (Անգլիոյ կաթոլիկների պետը), Կոմս Բինգնդորֆ (Ռուսաց դեսպանը Լոնդոնում), Լորդ Գրոմըր (Եգիպտոսի նախորդ կառավարիչ, յայտնի հայասէր), Լորդ Բրայս (ամենամեծ անգլիացի հայասէրը. ներկայ կառավարութեան նախորդ անդամ, Անգլիոյ յայտնի դիպլոմատներից մէկը), Լորդ Գըրզոն (Հնդկաստանի նախորդ փոխարքան), Սըր Ջոզէֆ Կամպտոն Ռիկէտ (Անգլիոյ ազատ եկեղեցիների միութեան պետը), Ջորջ Ռըսըլ (յայտնի հայասէր, արտաքին գործերի նախարար, Լորդ Ռըսըլի զաւակը և անդամ պետական գաղտնի խորհրդի), Լոնդոնի եպիսկոպոսը (որ վերջերս իր ճառերի նիւթ դարձրել է հայկական ողբերգութիւնը), Հերեֆորդի եպիսկոպոսը (հայ քրիստոնէութեան ուժեղ ջատագովներից մէկը), Իլիի եպիսկոպոսը, Սաուդուորք եպիսկոպոս, գերապատիւ Դր. Ամիկօ, Սըր Ջէյմս Ռէկիտ, Սըր Վիլիըմ Ռամզէյ (յայտնի գիտնական արևելագէտ և պաշտպան Հայաստանի ինքնավարութեան), Սըր Էդուին Պիըրս (40 տարի Պոլսում ապրած, հայ կուլտուրայի դատի անխոնջ պաշտպան), Լէդի Ֆրէդէրիկ Կէվէնդիշ («Հայաստանի Բարեկամներ» ընկերութեան նախագահուհին), Տիկին Ալէկսանտր Ուայդ (Սկովտացի հասարակական հզօր գործիչ), Վերապատուելի Դր. Գլիֆորդ (Հայաստանի ազատութեան հին պաշտպան, Անգլիոյ ամենայայտնի քարոզիչ), Վերապատուելի Մայըր (Հին հայասէր) Վերապատ. Հիչըլ (յայտնի քարոզիչ), Պ. Ջորջ Գէդըրըի («Դէյլի Նիւզ» օրաթերթի տէր, շատ հարուստ վաճառական), Պ. Ջոն Ռիդմընդ (Անգլ. պարլամենտում իրլանդական ազգայնական կուսակցութեան յայտնի լիդըրը), Պ. Արնոլդ Ռոնդըրի (պարլամենտական յայտնի գործիչ, Հայաստանի հին բարեկամներից), Ուսուցչապետ Իրընտըլ Հառտիս (հին հայագէտ-արևելագէտ, իր հանգուցեալ տիկնոջ հետ երկու անգամ այցելել է Հայաստան 1896-ին և 1809-ին), Պ. Բազիլ Օրպին (Իրլանդացի հարուստ հայասէրը)։

Գործադիր մարմին

Նախագահ՝

Պ. Անիւտին Ուիլիըմս (համայնքների պալատում հայ դատի քաջամարտիկ),

Անդամներ՝

Օր. Էմիլի Ռապնըն (հայկական «Կարմիր Խաչի և փախստականների ֆոնդի» եռանդուն կազմակերպիչը), Տիկին Մաըլէն Գոլ («Անգլուհիների Հայկական ֆոնդի» քարտուղարուհին), Օր. Հիկսոն, Պ. Օ. Կոնոռ (Իրլանդացի պարլամենտական, Ուիլիըմսի հետ Հայաստանի լաւագոյն բարեկամը՝ համայնքների պալատում), Պ. Նոէլ Բըկստոն (պարլամենտական), Գնդապետ Մարդար Գրէգըրի (հայազգի, նախագահ Լոնդոնի հայկական ընկերութեան), Վերապատ. Հարոլդ Բըկստոն (Հայաստանի անխոնջ բարեկամներից), Պ. Աւետում Յակոբեան (Նոր-Ջուղայեցի հայրենակից), Պ. Ռայդր Գըրակս (Հայաստանի հին բարեկամներից)։

## ՏՊԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՊՈԼՍՈՅ ԿԵԱՆՔԷՆ

Ա. Յ. . .ին

Կը յիշե՞ս երբեմն, այն իրիկունները, երբ Սկիւտարի բարձունքին վրայ, աչքերնիս յառած շքեղ վերջալոյսներու կը խօսէինք ամենաբարձր խորհուրդներուն վրայ մեր հոգիներուն, ինչպէս քաղցր էր մթնոլորտը, տոգորուած բուրումովը մեր քայլերուն ներքև ճզմուող անանուխներուն և մանիշակներուն. ու ինչքա՜ն պայծառ ու լուսաւոր կզգայի քու հոգիդ, որուն արիութիւնը և բարութիւնը զիս կազդուրեց ամենադժուարին օրերու մէջ։

Մայիսեան սքանչելի առաւօտը կը ծագէր. կանուխէն զարթնած էի և բաց պատուհանին առաջ Մաթերլինկի «Խոնարհներու գանձը» ծունկերուս վրայ կը կարդայի ու կերազէի. երբ աչքերս կը բարձրացնէի գիրքին վրայէն միտքս օրօրուն գեղեցիկ նախադասութիւններու դաշնակութեամբ, խաղաղ և լուսաւոր բնութիւնը իր անսահման շքեղութեամբը կը ժպտէր ինծի. Վոսփորի կորութիւններէն մէկը կը փայփլար բարձրացող արևին ճաճանչներով որոնք կը թափանցէին ճերմակ և լուսաւոր ամպերէն. մթին և սլացիկ նոճիներուն սև շուքերը դողդողալով կերկարէին ու ճերմակ պալատներուն վրայ կը ծածանէր վարդագոյն մշուշը առաւօտեան, քօղարկելով կարծես եդերական պերճանքը գեղեցիկ և անգութ մայրաքաղաքին։

Երեք շաբաթէ ի վեր ընտանիքէս հեռու փախստականի կեանքը ապրելէ ետքը նախորդ գիշերը վերադարձեր էի տուն Վոսփորի ասիական մէկ հեռաւոր նաւամատոյցէն, դէմքս ծածկած սգաւորի թանձր քօղով։ Ոչ ոք զիս տեսած էր և միամիտ յոյս ունէի որ ոստիկանութիւնը յուսայատած մեզ գտնելէ, կընար վերջապէս մեզ հանգիստ թողուլ գոնէ քանի մը օրեր։

Մանկական ուրախութիւնով մը հոգիս լեցուեցաւ երբ վերստին մտայ աշխատութեանս սենեակը. սեղանիս վրայ մնացեր էին միայն ինծի ընտանի և սիրելի գիրքեր, որովհետև բոլոր ձեռագիրներս ապահով տեղ փոխադրած էի արդէն. հոգիս կը տարտամէր քաղցր տխրութեան և միամիտ ուրախութեան մէջ. մտահոգութիւններու մշուշը յանկարծ փարատած էր. ինչո՞ւ, ես ալ չեմ գիտեր, ու այդ տրամադրութիւնը կը տևէր հետևեալ առաւօտը երբ այգուն առաջին պահուն արթնցայ։

Մինչև պատուհանս մագլցող վարդենին ծաղկած էր անսովոր առատութեամբ մը ու անոր ճկուն ոստերը կը կքէին վարդագոյն և բուրումնաւէտ բեռան ներքև. կարծես տունը և պարտէզը

կը տօնէին իմ վերադարձս։ Բաղցրութիւնը իմ մանուկական անդորր կեանքիս կը յաջորդէր անձկալի և հալածական օրերուն ու Մաթերլինկի մտածումները հեշտօրէն կը ներդաշնակուէին իմ հոգեկան վիճակիս հետ։

Յանկարծ դուռը զարնուեցաւ. այդքան վաղ առաւօտուն ո՞վ կրնար ըլլալ. մայրս գունաթափ մտաւ սենեակս իր ետևէն բերելով պառաւ ու վտիտ կին մը, որ իր սև քօղին ներքևէն կը նայէր ինծի անպատմելի սարսափով ու վիշտով։

—Ես աչքովս տեսայ, քեզի ձերբակալելու կուգան, շուտով շարժէ, գլուխդ ազատէ։ Կը նայէի պառաւին և իր սարսափը ու խօսքերը անիմաստ կը թուէին ինծի. կը նայէի իրեն ու կը ժպտէի, միտքս հեռուն մոլորուած, բացակայ ներկայէն և անոր բիրտ իրականութենէն։

—Քեզի կըսեմ, եաւրում, հոգիիդ ղուրպան, գնա, հեռացիր, իմացեր են հոս ըլլալդ, կուգան, կը մօտիկնան, Աստուած ինծի ղրկեց այս կողմերը, մենք մեռնինք, ձեր սև օրը չի տեսնանք։

Մէկէն հոգիս մթագնեցաւ, արագ ու լռին պատրաստուեցայ և պարտէզին կողմէն հեռացայ. մոռցեր էի իմ սգաւորի քօղս առնելու և հայ թաղերէն կանցնէի գլուխս բարձր բռնած, բայց միանգամայն զգալով որ հետզհետէ կը դժգունեմ. ոև է պատահար կարող էր զիս մատնել թշնամիին, ոև է փողոցի անկիւն կըրնար զիս դէմ առ դէմ հանել լրտեսներու և ոստիկաններու։ Բոլոր տուներու պատուհաններէն ինծի ծանօթ դէմքեր զգուշութեամբ կը բարևէին ու կարեկցութեամբ կը նայէին ինծի. ոմանք կը հրաւիրէին իրենց տունը ապաստանիլ. դեռ շատ կանուխ էր և փողոցները ամայի էին. իմ քայլերուս աղմուկը կը հնչէր անկանոն սալայատակին վրայ և կարծես իմ ներկայութիւնս կը ծանուցանէր թշնամիին. այդ պահուն ոչ մէկ բանի չէի խորհեր, կը քալէի շիտակ, իմ դէմս բացուող փողոցներէն ընթանալով, գրեթէ առանց որոշ նպատակի, խուսափելով կարծես իմ սեպհական ճակատագիրէս ու ցաւով յիշելով երբեմն քաղցրութիւնը իմ աշխատութեան սենեակիս։

Անգիտակցաբար հասեր էի իմ բանաստեղծ բարեկամիս Ա. Յ...ի*) տանը առաջք. մայրը զիս տեսաւ անմիջապէս ու դուռը բացաւ անշշուկ. իր ազնիւ և մաքուր դէմքը ողողուած էր արցունքով։ Անձկութեան նոյն վիճակը կը տիրէր իրենց տան մէջ և ես ու Ա. Յ... երկու փախստական մտաւորականներ դէմ առ դէմ եկանք։ Իմացեր էին որ նոր ձերբակալութիւններ տեղի են ունեցեր նախորդ գիշերը և թէ փախստականները նոր խստութեամբ կը հետապնդուին։ Իրենց ստացած տեղեկութիւնները արծարծեցին իմ կասկածներս և որոշեցինք երկուքս միասին հեռանալ Սկիւտարէն, բայց ո՞ւր երթանք, ո՞ւրկէ երթանք։ Բարեկամիս հանդարտ դէմքը գունատուած էր. անիկա յուզուած էր մօրը արցունքները տեսնելով և ճշմարտապէս ճնշիչ դժբաղդութեան մը զգացումը կը ներշնչէր այդ տանջուած և արցունքոտ դէմքը. զինքը հանդարտեցուցինք որքան որ կարելի էր և հազար զգուշաւորութիւններով մեկնեցանք տանէն,

(Կը շարունակուի) Զապէլ Եսայեան

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*ա)* Կովկասեան ճակատը *շարունակում է կեդրոնացած պահել իր վրայ ռազմագէտների ուշադրութիւնը։ Սակայն պաշտօնական հաղորդագրութիւններն այս ճակատից վերջերս այնքան աղքատիկ են, որ հնարաւորութիւն չըկայ ոչ հետևելու կռուի մանրամասնութիւններին և ոչ էլ ուրուագծելու հաւանական ընթացքը։*

*Բոլոր տեղեկութիւնները հաստատում են, որ այս ճակատի վրայ կռիւը կատարւում է ուղղակի դժնդակ պայմաններում։ Սառնամանիքը հասնում է 20°—25°-ի, ձիւնախառն փոթորիկից շնչել չի լինում, պահակները կանգնած տեղը սառչում-փայտանում են։ Իւրաքանչիւր քայլափոխում պատահում են սառած զինուորներին. ռազմադաշտի մի կէտում միայն գտնուել է 293 ասկեարի դիակ։ Սրանք զոհ են գնացել սառնամանիքին։*

*Սակայն չնայած այս դժնդակ պայմաններին՝ մեր զօրքերը շարունակ առաջ են դիմում։ Մեր կեդրոնը կանգնած Դևէ Բոյնուի առաջ՝ ռմբակոծում է թշնամու մարտկոցները։ Կռիւներն այստեղ թնդանօթամարտից անցնում են հրացանամարտի կամ սուինամարտի միայն այն դէպքերում, երբ թշնամին գաղտագողի դուրս է գալիս մարտկոցներից և ռուսական առանձին զօրամասերի վրայ յարձակւում։ Վերջին շաբաթ դուրս սողոսկելու մի քանի դէպքեր են եղել, որոնք բոլորն էլ վերջացել են թիւրքերի պարտութեամբ։ Ռուսաց ձախ թևը դեռ անցեալ շաբաթ Մանազկերտի գծի վրայ առաջանալով՝ գրաւել էր Խնուսը։ Դրանից յետոյ լուրեր տարածուեցին, թէ այս գծում ռուսները գրաւել են մի ամրութիւն, որ իշխում է Էրզրումի մի քանի մարտկոցների վրայ։ Դրանից շատերն այն ենթադրութիւնն էին անում, թէ ռուսները բարձրացել են Փալանթէօքեանի գլուխը։ Սակայն այդ լուրերը չհաստատուեցին և չէին էլ կարող հաստատուել, որովհետև նախ՝ Խնուսից Փալանթէօքեան 100 վերստից աւելի է և երկրորդ՝ այս լեռն այն ամրութիւններից չէ, որ այսքան կարճ ժամանակամիջոցում, այն էլ ձմրան օրերին, կարելի լինէր գրաւել։ Թէ արդեօք Խնուսը գրաւող զօրաբաժինը ներկայումս ինչով է զբաղուած, դժուար է ասել, որովհետև տեղեկութիւններ չկան։*

*Պատերազմական գործողութիւններն այս շաբաթ համեմատաբար աւելի կենդանի էին մեր աջ թևի վրայ՝ Ճորոխի շրջանում։ Այստեղ մեր զօրքերը թիւրքերին Թորթում լճի հովտից շպրտել են դէպի Ճորոխի հովիտը և այնտեղից էլ քշել մինչև Դումլու լեռները, որով և Կարինը շրջափակւում է հիւսիս-արևմտեան կողմից։ Այս թևի վրայ ռուսների ունեցած երկրորդ յաջողութիւնն է Արխաւէ գետի ափին ամրացած թիւրք զօրքերին իրենց դիրքերից դուրս մղելը, որով թիւրքերի նահանջի գծի մէջ է մտնում և Սև ծովի շրջանը։*

*Պաշտօնական հաղորդագրութիւնների մէջ այս շաբաթ ոչ թշնամու գերիների և ոչ էլ խոշոր կորուստների մասին չի խօսւում։ Սրանից պէտք է եզրակացնել, որ մի կողմից թշնամու նահանջն այլևս նախկին խուճապի բնաւորութիւնը չունի, իսկ միւս կողմից՝ շատ տեղերում նա արդէն ամրացել է և դիրքերի կռուի մէջ մտել։*

*բ)* Պարսկական ճակատի *վրայ մերոնք թէև դանդաղ, բայց առաջ են գնում։ Ուրմիոյ գծի վրայ նորից ռուսների ձեռքն է անցել Սովուջ-բուլաղը, իսկ Քիրմանշահի գծի վրայ նրանք յետ են մղել թշնամուն դէպի Նեհաւենդ, որ Քիրմանշահից մօտ 80 վերստ հարաւ-արևելք է գտնւում։ Այսպիսով եթէ ռուսներն առաջ գնան՝ երևի շուտով կը միանան Միջագետքի անգլիական զօրքերին։ Արդէն նրանց առաջապահ մասերի հեռաւորութիւնն իրարից հազիւ 200 վերստ լինի։*

*գ)* Միջագետքի ճակատում *վերջին ժամանակներս հանդարտութիւն է տիրում։ Տիգրիսի հովտում պարբերական հեղեղումից առաջացած անտանելի ցեխերն արգելք են հանդիսանում երկու կողմերի համար էլ պատերազմական գործողութիւններ սկսելու։ Սակայն բոլոր նշաններից երևում է, որ թիւրքերը սարսափելի ջանքեր են գործ դնում Բաղդադի գիծն ամրացնելու համար։*

*) Յուլիս ամսուան մէջ վերջապէս ձերբակալուեցաւ Ա. Յ. և անմիջապէս աքսորուեցաւ։

Եւ այդ շատ հասկանալի կը լինի, եթէ ի նկատի ունենանք, թէ ինչ նշանակութիւն ունի խալիֆների քաղաքը մահմեդականների աչքում և ինչ հսկայական նշանակութիւն Պարսկաստանի և Պարսից ծոցի առևտրի համար։

գ) Եգիպտական ճակատի վրայ դեռ ևս լուրջ գործողութիւններ չեն սկսած, երկու կողմն էլ եռանդուն պատրաստութիւնների վրայ են։

### ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Բալքանեան ռազմաբեմի չորս ճակատներից (Դարդանէլի, Սերբիայի, Չեռնոգորիայի և Սալոնիկի) այժմ միայն մէկն է մնացել — Սալոնիկի ճակատը։ Բայց այստեղ, ինչպէս երևում է, համաշխարհային պատերազմի ամենաուշագրաւ էջերից մէկը պէտք է բացուի։ Գերմանացիների համար անհրաժեշտ է խորտակել անգլօ ֆրանսական ուժն այս թերակղզու վրայ, որպէսզի իրենց և դինակիցների բանակի աջ թևը ազատուի շրջապատուելու մշտական վտանգից, իսկ դաշնակիցների համար էլ անհրաժեշտ է պահել Սալոնիկը իրենց ձեռքին՝ որպէսզի թէ Յունաստանը հանգիստ մնայ և թէ Եգէյեան ու Միջերկրական ծովերում իրենց գերիշխանութիւնը չխախտուի։ Երկու կողմն էլ տենդային պատրաստութեան մէջ են և ոչ մէկը ձեռնտու չի համարում վճռական գործողութիւնների անցնելու — Գերմանիան՝ որովհետև ռուսական ճակատն ամրացնելու հոգսը նրան շատ է զբաղեցնում և անգլօ-ֆրանսացիները՝ որովհետև դեռ բաւականաչափ ույժ չունեն։ Պատերազմական գործողութիւններն այստեղ սահմանափակւում են հետախոյզ խմբերի թեթև ընդհարումներով և օդային նաւերի ու սաւառնակների արշաւանքներով։

### ԱՒՍՏՐՕ-ԳԵՐՄԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

ա) Արեւելեան ճակատը գալիցիական վերջին արշաւանքից պահ մի հանգստանալուց յետոյ նորից սկսել է կենդանանալ։ Ռիգա-Ֆրիդրիխշտադտի գծի վրայ գերմանացիք բուռն ճիգեր են թափում մեր շղթան պատռելու համար, բայց ապարդիւն։ Նրանք գործ են դնում 12 դիւյմանոց թնդանօթներ և էլի չեն կարողանում յետ մղել մեր զօրքերին կամ լռեցնել մեր թնդանօթները։ Մեր կենտրոնում միանգամայն հանգիստ է, որովհետև ներկայ հալոցքներին անհնարին է տեղից շարժուել։ Սակայն հարաւային գծի վրայ կամ Գալիցիայում գործողութիւնները լուրջ ընթացք են ստանում։ Այստեղ աւստրօ-գերմանացիք կուտակել են ահագին ուժեր (բարոն Պֆլանցեր-Բալտինի և գեներալ Հալուիցի բանակները, որոնցից առաջինն ունի 6 կորպուս, իսկ երկրորդը 12 դիւիզիա) և ամրացրել իրենց դիրքերը զինուորական արուեստի (տեխնիկայի) վերջին խօսքի համեմատ։

Այսպէս օրինակ աւստրիական զօրքերը այստեղ վերջերս սկսել են օգտուել մի նոր գործիքով, որ 30-40 մետր տարածութեան վրայ բոց է արձակում և յարձակւող թշնամուն այրում... Սակայն չնայած այս հանգամանքներին, ռուսներին յաջողւում է, յամառ կռիւներից յետոյ, գրաւել Ուսեչկօ աւանը, շպրտել թշնամիներին Դնեստրի աջ ափը և մինչև անգամ գետի աջ ափին մի քանի դիրքեր գրաւել։ Ուսեչկօի գրաւումը ռազմական տեսակէտից մեծ կարևորութիւն ունի, բայց աւելի ևս մեծ է նրա քաղաքական նշանակութիւնը։ Եթէ ռուսները յաջողին այս գծի վրայ պահպանել ուժերի արդի յարաբերութիւնը՝ վստահօրէն կարելի է ասել, որ Ռումինիան երբեք չի ազդուի ոչ գերմանական խոստումներից և ոչ սպառնալիքներից։

բ) Արեւմտեան ռազմաբեմը նոյնպէս կենդանացած էր այս շաբաթ. թէ անգլիական, թէ բելգիական և թէ ֆրանսական գծերի վրայ շարունակ տեղի ունէին ուժեղ թնդանօթամարտ և ականային կռիւներ։ Կռիւների նախաձեռնութիւնը մեծ մասամբ պատկանում է գերմանացիներին, բայց նրանց յարձակումները ոչ այնքան դրական արդիւնքի հասնելու ձգտումից էին առաջանում, որքան թշնամու յարձակումները կանխելու ցանկութիւնից։ Դաշնակիցները թշնամու բոլոր յարձակումներն էլ յաջողութեամբ յետ են մղում և միանգամ ևս ապացուցում, որ Գերմանիայի առաջխաղացութեանն այս գծի վրայ միանգամընդմիշտ halt (կանգ առ) ասուած։

գ) Իտալական ճակատի վրայ սովորական թնդանօթամարտից դուրս նոր բան տեղի չի ունեցել այս շաբաթ։

Ա. Ջամալեան

ՎՐԻՊԱԿ.— Համբաւաբեր № 5, երես ա. տող վերջին և վերջին բառը փոխանակ 1915 թ. պէտք է լինի 1916։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

### ՅՈՒՑԱԿ ՈՒՂԱԺ № 6

# „ՀԱՄԲԱՐՁԱՐՁԲԵՐ“-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ԱՊԱՍՏԱՐԱՆՆԵՐԻ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

## ԴԻԼԻՋԱՆԻ V ԱՊԱՍՏԱՐԱՆ

(Շարունակութիւն)

| № № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդա-վայր | Տարիքը | Ծնող ունի՞ հայր կամ մայր | Ծնողների տեղը | Գաղթակա՞ն է | ՏԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 39 | Պետրոսեան Սիսէ | Կարճկան | 10 | չունի | — | — | |
| 40 | Պետրոսեան Ագնիւ | Պաշկալա | 6 | չունի | — | — | |
| 41 | Զարոյեան Գրիգոր | Խնձորեսկ | 8 | մայր | անյայտ | — | |
| 42 | Սահակեան Խաչատուր | Կարճկան | 10 | չունի | — | — | |
| 43 | Սարգիսեան Միհրան | Աթանոն | 9 | մայր | Հաւթւան | այո | |
| 44 | Սիմէոնեան Վարդան | Կէչան | 10 | չունի | — | — | |
| 45 | Սարոյեան Կաքաւ | Թաղա | 12 | չունի | — | — | |
| 46 | Սարգիսեան Նուպար | Գաւուշ | 10 | հայր | Հաւթւան | այո | |
| 47 | Վարդանեան Զաքար | Բաղէշ | 9 | չունի | — | — | |
| 48 | Օհանեան Կինօ | Կարճկան | 10 | ունի | Հաւթւան | այո | |

## ԴԻԼԻՋԱՆԻ VI ԱՊԱՍՏԱՐԱՆ

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աստուածատրեան Երուանդ | Կարճկան | 13 | — | — | — | |
| 2 | Արգարեան Յակոբ | Գեաւառ | 13 | — | — | — | |
| 3 | Ասոյեան Տիգրան | Խիզան | 13 | — | — | այո | |
| 4 | Աւագեան Հայկանուշ | Բերկրի | 15 | — | — | — | |
| 5 | Աւագեան Լուսիկ | Բերկրի | 12 | — | — | — | |
| 6 | Արգարեան Հրանոյշ | Գեաւառ | 8 | — | — | — | |
| 7 | Բաղդասարեան Քրիստինէ | Վան | 13 | — | — | այո | |
| 8 | Բենիամինեան Զարուհի | Գաւաշ | 4 | — | — | — | |
| 9 | Գէորգեան Մուրադ | Շատախ | 15 | — | — | այո | |
| 10 | Գէորգեան Արմենուհի | Գեաւառ | 13 | հայր | Սալմաստ | — | |
| 11 | Թադէոսեան Աստուածատուր | Գեաւառ | 14 | — | — | — | |
| 12 | Թումասեան Սէյլան | Կարճկան | 8 | — | — | — | |
| 13 | Լեոնեան Հայկանուշ | Գաւաշ | 8 | — | — | — | |
| 14 | Խոստեղեան Մովսէս | Կարճկան | 14 | — | — | — | |
| 15 | Խաչատրեան Շուշան | » | 10 | — | — | — | |
| 16 | Խաչատրեան Ոսկիան | » | 10 | մայր | Հաւթւան | — | |
| 17 | Կարապետեան Յովհաննէս | Կարճկան | 13 | — | — | — | |
| 18 | Կարապետեան Զաքար | » | 13 | — | — | — | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 19 | Կարապետեան Մուրադ | Մոկս | 12 | — | — | — |
| 20 | Կարապետեան Բադալ | Կարճկան | 13 | — | — | — |
| 21 | Կարապետեան Սէյլան | » | 13 | — | — | — |
| 22 | Ղուկասեան Աղաւնի | Մոկս | 12 | — | — | — |
| 23 | Ղազարեան Շուշան | Կարճկան | 9 | — | — | — |
| 24 | Մուրադեան Յարութիւն | Կարճկան | 14 | հայր | Հաւթւան | — |
| 25 | Մխիթարեան Մելքոն | Մոկս | 13 | — | — | այո |
| 26 | Մովսիսեան Յովհաննէս | Գաւաշ | 15 | հայր | Էջմիածին | — |
| 27 | Մկրտչեան Բադալ | Ախլաթ | 13 | — | — | — |
| 28 | Մարգարեան Խաչատուր | Խօշապ | 12 | — | — | — |
| 29 | Մխիթարեան Յարութիւն | Մոկս | 7 | — | — | — |
| 30 | Մարտիրոսեան Ջանէ | » | 12 | — | — | — |
| 31 | Մկրտչեան Մարիամ | Կարճկան | 8 | — | — | — |
| 32 | Յարութիւնեան Զոհրաբ | Մոկս | 13 | — | — | — |
| 33 | Յովհաննիսեան Աւետիս | Խօշապ | 12 | — | — | — |
| 34 | Յակոբեան Արսէն | Վան | 5 | — | — | — |
| 35 | Յովհաննիսեան Գուրգէն | Մամռտանք | 12 | մայր | Սալմաստ | այո |
| 36 | Յովհաննիսեան Գիւլիզար | » | 12 | — | — | — |
| 37 | Յարութիւնեան Ազնիւ | Կարճկան | 13 | — | — | — |
| 38 | Յովհաննիսեան Վարդուհի | » | 11 | — | — | — |
| 39 | Յարութիւնեան Զլֆօ | Սպարկերտ | 10 | հայր | Զիրուխլի | — |
| 40 | Յակոբեան Վարսենիկ | Վան | 4 | — | — | — |
| 41 | Նազարեան Շողեր | Կարճկան | 10 | հայր-մ. | Հաւթւան | — |
| 42 | Նադրէեան Ռեհան | Սպարկերտ | 13 | հայր-մ. | Հաւթւան | — |
| 43 | Նշանեան Պայծառ | Արճակ | 11 | մայր | Զիրուխլի | — |
| 44 | Նազարեան Մայրանուշ | Վան | 4 | մայր | Հաւթւան | — |
| 45 | Շերոյեան Երանուհի | Գեաւառ | 11 | — | — | — |
| 46 | Շահինեան Կաքաւ | Գաւաշ | 10 | — | — | — |
| 47 | Շահինեան Շուշանիկ | Մոկս | 10 | հայր | Հաւթւան | — |
| 48 | Ռուբէնեան Արսէն | Բաշկալա | 13 | — | — | այո |
| 49 | Սեդրակեան Մովսէս | Մոկս | 12 | — | — | — |
| 50 | Սարգսեան Մարգարիտ | Կարճկան | 10 | — | — | — |
| 51 | Սարգսեան Մաքրուհի | Կարկառ | 12 | մայր | Հաւթւան | — |
| 52 | Վարդանեան Աղամիր | Ծուլամերկ | 12 | մայր | Սալմաստ | — |
| 53 | Վարդանեան Հռիփսիմէ | Արճակ | 10 | մայր | Զիրուխլի | — |
| 54 | Տէր-Վարդանեան Հայկանուշ | Կարճկան | 14 | — | — | — |
| 55 | Տէր-Թոմասեան Վարդան | Գաւաշ | 15 | մայր | Սալմաստ | — |
| 56 | Տէր-Թոմասեան Լեոն | » | 11 | մայր | Սալմաստ | — |

## ԴԻԼԻՋԱՆԻ VII ԱՊԱՍՏԱՐԱՆ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աբգարեան Համբարձում | Կարճկան | 12 | հայր | անյայտ | — |
| 2 | Անդրէասեան Վարդանուշ | Թեմար | 12 | — | — | — |
| 3 | Ասատուրեան Սիրանուշ | Կարճկան | 13 | — | — | — |
| 4 | Աբրահամեան Գենար | Մոկս | 12 | հայր | Սալմաստ | — |
| 5 | Բաղդասարեան Խաչատուր | Գեաւառ | 10 | մայր | Սալմաստ | — |
| 6 | Բարսեղեան Եսայի | Արճէշ | 3 | » | Դիլիջան | — |
| 7 | Բարսեղեան Արամ | » | 5 | » | » | — |
| 8 | Բարսեղեան Շուշանիկ | » | 7 | » | » | — |
| 9 | Գրիգորեան Մելքոն | Գաւաշ | 12 | — | — | — |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 10 | Գաբրիէլեան Յարութիւն | Գաւաշ | 14 | մայր | Սալմաստ | այո |
| 11 | Գասպարեան Սեդրակ | Խիզան | 12 | » | » | — |
| 12 | Գրիգորեան Սենեքերիմ | Վան | 12 | » | » | այո |
| 13 | Գրիգորեան Վարդանուշ | Հայոց-Ձոր | 10 | — | — | — |
| 14 | Գալստեան Սուլթան | Մոկս | 12 | հ.-մայր | Սալմաստ | — |
| 15 | Գրիգորեան Զարուհի | Կարճկան | 14 | — | — | — |
| 16 | Գէորգեան Վանուհի | Վան | 12 | — | — | այո |
| 17 | Դաւթեան Աղաւնի | Կարճկան | 14 | մայր | Սալմաստ | — |
| 18 | Զաքարեան Մարիամ | Մոկս | 9 | մայր | » | — |
| 19 | Թադէոսեան Միհրան | Խօշապ | 12 | — | — | — |
| 20 | Խաչատրեան Նոյեմզար | Մոկս | 7 | — | — | — |
| 21 | Կարապետեան Տիգրան | Բակալա | 11 | մայր | Սալմաստ | — |
| 22 | Ղազարեան Մովսէս | Կարճկան | 12 | — | — | այո |
| 23 | Ղազարեան Նիկոլայ | Գաւաշ | 8 | մայր | Սալմաստ | — |
| 24 | Ղազարեան Սարգիս | » | 15 | » | » | — |
| 25 | Ղազարեան Վարդան | » | 10 | » | » | — |
| 26 | Մանուկեան Սահակ | Կառկառ | 11 | — | — | այո |
| 27 | Մանուկեան Մանուկ | Կարճկան | 12 | — | — | — |
| 28 | Մարտիրոսեան Անդրանիկ | Վան | 13 | — | — | — |
| 29 | Մանուկեան Յոնան | Կարճկան | 14 | — | — | այո |
| 30 | Մաթէոսեան Օհան | Շատախ | 11 | — | — | — |
| 31 | Մարգարեան Նշան | Կարճկան | 6 | — | — | — |
| 32 | Մանուկեան Գրիգոր | Մոկս | 10 | — | — | — |
| 33 | Մուրադեան Զարուհի | Վան | 6 | — | — | — |
| 34 | Մելքոնեան Մարգարիտ | Կարճկան | 9 | հ.-մայր | Ալաշկերտ | — |
| 35 | Մուրադեան Յասմիկ | Հայոց-Ձոր | 9 | — | — | — |
| 36 | Մելքոնեան Ինգլիզ | Կարճկան | 11 | հայր | Ալաշկերտ | — |
| 37 | Մարտիրոսեան Զինուոր | » | 11 | — | — | — |
| 38 | Մկրտչեան Ազնիւ | Գաւաշ | 12 | հ.-մայր | Սալմաստ | — |
| 39 | Մանուկեան Շամամ | Կարճկան | 14 | — | — | — |
| 40 | Մովսէսեան Ալմօ | » | 12 | հ.-մայր | Սալմաստ | — |
| 41 | Մանուկեան Նուպար | Կարկառ | 9 | մայր | » | — |
| 42 | Յակոբեան Նշան | Վան | 7 | — | — | այո |
| 43 | Յովհաննիսեան Մելքոն | Կարկառ | 15 | — | — | այո |
| 44 | Յակոբեան Ազատվարդ | Վան | 13 | — | — | այո |
| 45 | Յակոբեան Մարգար | Գաւաշ | 12 | — | — | — |
| 46 | Յովհաննէսեան Արմենուհի | Վան | 8 | — | — | — |
| 47 | Յարութիւնեան Ազնիւ | Կարճկան | 10 | մայր | Սալմաստ | — |
| 48 | Յունոյեանց Շողակաթ | Գաւաշ | 10 | մայր | » | — |
| 49 | Յովհաննիսեան Թագուհի | » | 11 | — | — | — |
| 50 | Յովհաննիսեան Մարիամ | Կարկառ | 13 | — | — | — |
| 51 | Յովհաննիսեան Շողակաթ | » | 7 | — | — | — |
| 52 | Նշանեան Վարդան | Կարճկան | 11 | — | — | — |
| 53 | Ներսէսեան Վահան | Գաւաշ | 14 | — | — | — |
| 54 | Ներսէսեան Սոսէ | » | 8 | — | — | — |
| 55 | Պետրոսեան Աւետիս | Շատախ | 9 | — | — | — |
| 56 | Պետրոսեան Եղիշէ | Մոկս | 10 | — | — | — |
| 57 | Պետրոսեան Գէորգ | Բաշկալա | 11 | — | — | — |
| 58 | Պետրոսեան Աւետիս | Կարճկան | 12 | — | — | — |
| 59 | Պետրոսեան Արմենակ | Գաւաշ | 13 | — | — | — |
| 60 | Պետրոսեան Եղիսաբեթ | Մոկս | 7 | հայր | Սալմաստ | — |
| 61 | Պետրոսեան Վարվառէ | Գաւաշ | 11 | » | » | — |
| 62 | Սիրաքեան Եղիշէ | Կարճկան | 8 | » | Ամերիկա | — |
| 63 | Սիմէոնեան Մաքրուհի | » | 6 | մայր | Սալմաստ | — |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 64 | Վարդանեան Պետրոս | Մոկս | 11 | — | — | — |
| 65 | Վարդանեան Խաչիկ | Կարկառ | 8 | — | — | — |
| 66 | Վարդանեան Մաքրէ | Կարկառ | 12 | — | — | — |
| 67 | Վարդանեան Հռաքել | Կարկառ | 13 | մայր | Սա.մաստ | — |
| 68 | Տէր-Մանուէլեան Եղիսաբեթ | Կաւաշ | 12 | մայր | Սալմաստ | — |

## ԱՐՀԵՍՏԱՆՈՑ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աբրահամեան Մեսրովբ | Ախլաթ | 14 | — | — | այո |
| 2 | Աստուրեան Միսաք | Ախլաթ | 14 | — | — | — |
| 3 | Ալէքսանեան Մկրտիչ | Մանազկերտ | 13 | — | — | — |
| 4 | Գաբրէլեան Մարտիրոս | Բերկրի | 14 | — | — | — |
| 5 | Թորոսեան Աբրահամ | Կարճկան | 15 | — | — | — |
| 6 | Թումասեան Յարութիւն | | 14 | հայր-մ. | Կամ. Սալմ. | այո |
| 7 | Իգիթեան Հլղաթ | Բուլանըխ | 15 | մայր | Ջիբուխլի | — |
| 8 | Խաչատրեան Կարապետ | Կարճկան | 15 | — | — | — |
| 9 | Խէպոյեան Գէորգ | Կարկառ | 13 | — | — | — |
| 10 | Կիւլանեան Մեխակ | Հայոց-Ձոր | 17 | — | — | այո |
| 11 | Մարգարեան Կիրակոս | Խօշապ | 14 | — | — | — |
| 12 | Մելոյեան Եղիշէ | Բուլանըխ | 13 | — | — | — |
| 13 | Յակոբեան Եղիազար | Կարճկան | 14 | — | — | — |
| 14 | Նազարեան Ումուրշատ | Վարդենիս | 15 | — | — | — |
| 15 | Սահակեան Ռուբէն | Գաւաշ | 19 | — | — | — |
| 16 | Վարդանեան Մարգար | Արճակ | 15 | մայր | Ջիբուխլի | — |
| 17 | Օհանեան Ղուկաս | Ախլաթ | 14 | — | — | — |

### Արհեստաւորներ-կօշկա-կարներ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Գէորգեան Մարտիրոս | Ապագա | 15 | — | — | — |
| 2 | Գրիգորեան Մխիթար | Լիզ | 13 | — | — | — |
| 3 | Յարութիւնեան Յովհաննէս | Գաւաշ | 13 | մայր | անյայտ | — |
| 4 | Յարութիւնեան Միսաք | Բուլանըխ | 13 | — | — | — |
| 5 | Յարութիւնեան Մխիթար | » | 12 | — | — | — |
| 6 | Յովհաննիսեան Մխիթար | Ախլաթ | 13 | — | — | — |
| 7 | Յարոյեան Մուշեղ | Մանազկերտ | 14 | հայր | Ալէքսան. | — |
| 8 | Սերոբեան Անդրէաս | Ախլաթ | 12 | հայր | անյայտ | — |
| 9 | Սարգսեան Փանոս | Ալջավազ | 13 | մայր | Դիլիջան | — |

(Կը շարունակուի)

Տպ. Ն. Աղանեանի